## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6

ՀՈՒՆԻՍ 1975

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ







# ՄԵՐ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԿԱՐԵՎՈՐ ՆԱԽԱՊԱՅՄԱՆԸ

*ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՎ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ բոլոր փուլերում լենինյան կադրային քաղաքականությունը եղել և մնում է կոմկուսակցության գործունեության առանցքային պրոբլեմներից մեկը: Մեր երկրի զարգացման նախընթաց ժամանակաշրջանի փորձը ցույց է տալիս, որ հասարակական կյանքի բոլոր ոլորտների ղեկավարման մակարդակի բարձրացումը, մասսաների շրջանում տարվող կազմակերպչական, քաղաքական և գաղափարական աշխատանքի հաջողությունը պայմանավորված են կադրերի ճիշտ ընտրությամբ ու տեղաբաշխմամբ, նրանց գաղափարայնությամբ:*

*ՍՄԿԿ XXIV համագումարն ըստ պատշաճի արժեքավորեց կադրային քաղաքականության ասպարեզում կուսակցության էական հասումները և մշակեց կադրերի ընտրության ու դաստիարակության լենինյան սկզբունքի անշեղ կիրառման կոնկրետ ծրագիր: «Մեր կադրային քաղաքականության նպատակն է,— նշեց Լ. Ի. Բրեժնևը,— հին կադրերի նկատմամբ հոգատար վերաբերմունքի, նրանց փորձի ու գիտելիքների առավելագույն օգտագործման հետ մեկտեղ, առաջ քաշել երիտասարդ, խոստումնալի աշխատողների»* (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, *էջ 132*):

*Հարցին մոտենալով այդ առումով և բացահայտելով մեր հանրապետության տնտեսական ու հասարակական կյանքի լուրջ թերությունները՝ ՀԿԿ Կենտկոմի հունվարյան (1975 թ.) պլենումը հանրապետությունում կադրային քաղաքականության ամենախոցելի տեղը համարեց պատրաստի ռեզերվի բացակայությունը: Շեշտելով, որ այդ քաղաքականությունը ոչ թե կարճատև ակտ է, այլ մշտապես գործող պրոցես, Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Դեմիրճյանը կուսակցական մարմիններից, կուսկազմակերպություններից պահանջեց՝ կադրերի ընտրության և պատրաստման գործը դարձնել անընդհատ, այն կազմակերպել գիտականորեն, որոնել ու հայտաբերել պրակտիկ աշխատանքում կոփված ու գործունյա, խոստումնալի ու ձեռներեց գործիչներ, առանց որոնց հնարավոր չէ մեր առաջընթացը:*

*Կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության խնդրի պատշաճ լուծումը մեր տնտեսական ու կուլտուրական շինարարության հաջողության վճռական պայմանն է, կուսկազմակերպությունների արդյունավետ գործունեության չափանիշը: «Կադրային քաղաքականությունը,— ասաց ընկ. Կ. Դեմիրճյանը,— այն փորձաքարն է, որի միջոցով ստուգվում և որոշվում են կուսակցական կազմակերպության, նրա ղեկավար կազմի հասունությունն ու սկզբունքայնությունը, աշխատունակությունն ու մարտունակությունը»:*

*Մեր հանրապետությունն ունի ուսումնական հաստատությունների լայն ցանց: Դրանք ամեն տարի ժողովրդական տնտեսությանը տալիս են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ մի քանի հազար շրջանավարտներ, որոնք հիմնականում համալրում են մեր միջին օղակի կադրերի*

ազգաբնակչության կենսամակարդակի անշեղ բարձրացման նկատառմամբ։ Դա
մեր կուսակցության լենինյան ազգային քաղաքականության ցայտուն արտա-
հայտությունն է։
Կուսակցության ու կառավարության նոր միջոցառման նպատակն է բա-
րենպաստ պայմաններ ստեղծել Սովետական Հայաստանի էկոնոմիկայի ու
կուլտուրայի համակողմանի զարգացման համար, ապահովել հանրային ար-
տադրության արդյունավետության ըստ ամենայնի բարձրացումը, աշխատա-
վորների բարեկեցության հետագա աճը։ Որոշմամբ նախատեսվում է զարգաց-
նել մեքենաշինության ոչ-նյութատար ճյուղերը, ժողովրդական տնտեսության
տեխնիկական առաջընթացը որոշող ռադիոտեխնիկական, էլեկտրոնային, էլեկ-
տրատեխնիկական, սարքաշինական արդյունաբերությունը, էներգետիկ բազան։
Միջոցառումներում հատուկ տեղ է հատկացվում բնակավայրերի գազիֆիկաց-
մանը, օգտակար հանածոների արդյունավետ օգտագործմանը։
ՍՄԿԿ Կենտկոմն ու ՍՍՀՄ Մինիստրների սովետը մեծ կարևորություն են
տալիս նաև թեթև ու սննդի արդյունաբերության հետագա զարգացմանը,
տրանսպորտի ու կապի վիճակի արմատական բարելավմանը։ Առաջիկա տա-
րիներին հանրապետության տարբեր վայրերում կկառուցվեն մի շարք գործա-
րաններ ու ֆաբրիկաներ, կմեծացվեն գործող ձեռնարկությունների կարողու-
թյունները։
Կուսակցությունն ու սովետական կառավարությունը որոշել են զգալի մի-
ջոցներ հատկացնել գյուղատնտեսության ետ մնալը հաղթահարելու, դրա հե-
տագա ինտենսիվ զարգացումն ապահովելու, մելիորացիայի և ջրատնտեսական
շինարարությունը ծավալելու, նոր ոռոգելի հողեր յուրացնելու համար։ ՍՄԿԿ
Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշմամբ մեծ ուշադրություն է
նվիրվում շրջակա միջավայրի պահպանության հարցին, կապիտալ շինարա-
րության արմատական բարելավմանը։
Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմը հանրապետության կուսակ-
ցական, սովետական ու տնտեսական մարմինների, բոլոր կոմունիստների ու-
շադրությունը բևեռում է հատկացված միջոցները հաշվենկատ, խնայողաբար
ու խելացի օգտագործելու, տնտեսական ու բնական ռեսուրսները, աշխատան-
քային բոլոր ռեզերվները արդյունավետ գործադրելու վրա։ Այժմ, երբ մեր
հանրապետության ժողովրդական տնտեսության համակողմանի զարգացման
համար բացվել են լայն հեռանկարներ, իր ողջ սրությամբ ծառանում է կադրե-
րի պատասխանատվության բարձրացման խնդիրը։ Նոր խնդիրների լուծման
առումով էլ պետք է արժեքավորել կադրերի, բոլոր կոմունիստների գործու-
նեությունը։

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՇԽԱՏՈՒԺԻ ԲՆՈՒՅԹԻ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԱՐԴԻ ՓՈՒԼՈՒՄ

**Վ. Ս. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ**
Տնտեսական գիտությունների դոկտոր

*ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՆՅՈՒԹԱՏԵԽՆԻԿԱ-
ԿԱՆ ԲԱԶԱՅԻ և արտադրահարաբերությունների մեջ
վերջին մի քանի տասնամյակում, հատկապես 1960—1970 թթ. տեղի ունեցած
քանակական ու որակական խոշոր փոփոխությունների խոր և բազմակողմանի
գիտական վերլուծության հիման վրա ՍՄԿԿ XXIV համագումարը հանգեց այն
կարևորագույն եզրակացության, թե մեր երկրում սովետական մարդկանց
անձնվեր աշխատանքով կառուցվել է զարգացած սոցիալիստական հասարա-
կարգ, որը հնարավորություն է տվել ձեռնամուխ լինելու կուսակցության
ծրագրով և նրա վերջին համագումարների կողմից առաջադրված մեծ խնդրի
պրակտիկ լուծմանը՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը
(տե՛ս ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 50)։*
*Համագումարին Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ բազմակող-
մանիորեն փաստարկվեցին կոմունիստական շինարարության արդի փուլի՝
զարգացած սոցիալիզմի էկոնոմիկայի առանձնահատկությունները և ձևա-
կերպվեցին այն խնդիրները, որոնք բխում են այդ առանձնահատկություննե-
րից։ Դրանք վերաբերում են սոցիալիստական հասարակության կյանքի բոլոր
հիմնական կողմերին։ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման արդի
փուլի առավել կարևոր առանձնահատկությունը համարվեց ժողովրդական
տնտեսության միանգամայն նոր մասշտաբները։ «Ստեղծվել է տնտեսական
վիթխարի հզորություն, որի հիմքը կազմում են բազմաճյուղ ինդուստրիան և
սոցիալիստական խոշոր գյուղատնտեսությունը, առաջավոր գիտությունը,
բանվորների, մասնագետների, տնտեսական ղեկավարների որակյալ կադրերը»
(նույն տեղը, էջ 50—51)։*
*ՍՍՀՄ-ում 30-ական թվականների երկրորդ կեսից սկսած սոցիալիզմի
ամրապնդման ու զարգացման փուլում էապես փոխվեցին հասարակական աշ-
խատանքի ֆունկցիոնալ բովանդակությունն ու աշխատուժի որակական հատ-
կանիշները։*
*Աշխատանքի ֆունկցիոնալ բովանդակությունը որոշվում է դրա նպատա-*

Երեսունական թվականների վերջին մեր գյուղի աշխատավորների 6 տոկոսն ուներ բարձրագույն և միջնակարգ (լրիվ և թերի) կրթություն։ Իսկ արդեն 1970 թ. տվյալներով գյուղական բնակչության կեսից ավելին ավարտել էր միջնակարգ կամ բարձրագույն դպրոցը։

Երկրում համընդհանուր միջնակարգ կրթության կիրառումը, պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների ցանցի ընդլայնումը, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության հետագա զարգացումը և կատարելագործումը աշխատավորների ընդհանուր կրթական մակարդակի և պրոֆեսիոնալ որակավորման հետագա բարձրացման անհրաժեշտ պայման են։

Ֆիզիկական աշխատանքի ինտելեկտուալացման ինտենսիվ պրոցեսին համապատասխան, ավելի մեծ պահանջ է զգացվում բարձրացնել ֆիզիկական աշխատանքի մարդկանց հանրակրթական ու կուլտուր-տեխնիկական մակարդակը։ Ներկայումս միայն արդյունաբերության մեջ հաշվվում է 280 աշխատանքային պրոֆեսիա, որոնց զբաղեցման համար պահանջվում է առնվազն միջնակարգ մասնագիտական կրթություն։ Աճում է որակյալ բանվորների տեսակարար կշիռը։ Ժամանակակից տեխնիկայի հետ գործ ունեցող բոլոր բանվորները, որպես կանոն, ունեն 4-րդից բարձր տարակարգ։ 1962—1972 թթ. ՀՍՍՀ արդյունաբերության մեջ միջին և բարձր տարակարգի բանվորների թիվն աճել է 71 տոկոսով։ Բարձր տարակարգի բանվորների թիվն առանձնապես ավելացել է մեքենաշինության, քիմիական և սննդի արդյունաբերության մեջ։ Ընդ որում, այս ճյուղերում աճել է նաև բարձր տարակարգի բանվորների տեսակարար կշիռը։

ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅԱՆ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ, աշխատավորների կրթական ու կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումը, սոցիալիստական արտադրահարաբերությունների զարգացումը խթանում են աշխատանքի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքը, այդ պայմաններում բարձրանում է աշխատողի սոցիալական ակտիվությունը և նախաձեռնությունը արտադրության տեխնիկական ու կազմակերպական հարցերի լուծման մեջ, որի մասին են վկայում գյուտարարության և նորարարության լայն թափը, աշխատավորների ավելի ակտիվ մասնակցությունը սոցիալիստական մրցությանը։ 1970 թ., 1940 թ. համեմատությամբ, ՍՍՀՄ-ում գյուտարարների և ռացիոնալիզատորների թիվն աճել է ավելի քան 7 անգամ։ 1973 թ. այն կազմել է 3.996 հազար, իսկ տրված առաջարկությունների թիվը հասել է 4.925 հազարի (տե՛ս «Народное хозяйство СССР в 1973 г.», Статистический ежегодник, М., 1974, стр. 184)։ ՀՍՍՀ-ում գյուտարարների և ռացիոնալիզատորների թիվը 1965 թ. եղել է 12,6 հազար, իսկ 1973-ին՝ 17,8 հազար։ Տրված առաջարկությունները համապատասխանաբար կազմել են 17,7 հազար և 21,6 հազար (տե՛ս «Народное хозяйство Армянской ССР за 1973 год», Ереван, 1974, стр. 36)։

Գիտատեխնիկական առաջընթացի հիմնական ուղղությունների ծավալումը և այդ հիման վրա աշխատանքի բովանդակության ու աշխատուժի բնույթի փոփոխությունները սոցիալիստական զարգացած էկոնոմիկայի պայմաններում նյութական նախադրյալ են աշխատանքի սոցիալ-տնտեսական այնպիսի երևույթի հաղթահարման համար, ինչպիսին է որակավորված և չորակավորված, ծանր ու թեթև, արդյունաբերական և գյուղատնտեսական, ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև եղած տարբերությունը։ Մտավոր ու ֆիզիկական աշխատանքի մարդիկ զբաղեցնում են տարբեր տեղ և կատարում տարբեր դեր հասարակական արտադրության համակարգում։ Բանվորները և կոլտնտեսականները հիմնականում կատարում են ֆիզիկական, կատարողական աշխատանքի ֆունկցիաներ, նրանք գլխավորապես զբաղված են նյութական արտադրության մեջ։ Մտավորականները, այսինքն՝ մասնագիտությամբ մտավոր աշխատանքով զբաղվածները, կատարում են ղեկավարման ֆունկցիաներ արտադրության մեջ, կառավարման ապարատում, զարգացնում են գիտությունը, արվեստը, գրականությունը և այլն։ Այս տարբերությունները պայմանավորում են սոցիալական մի շարք այլ տարբերություններ։ Մտավոր



աշխատանքի կատարումը պահանջում է ընդհանուր կրթական և կուլտուրական բարձր մակարդակ, մտավոր աշխատողների որակավորման ավելի բարձր աստիճանը, ավելի բարդ ու պատասխանատու աշխատանք կատարելը ենթադրում են միջին ավելի բարձր վարձատրություն, այդ աշխատողները տիրապետում են գիտության, կուլտուրայի, արվեստի նվաճումներին, նրանց ապրելակերպը, ազատ ժամանակի օգտագործման կառուցվածքն այլ են։

Գիտատեխնիկական առաջընթացի նվաճումներն արտադրության մեջ ներդնելուն համեմատ, ֆիզիկական աշխատանքը դառնում է ավելի ու ավելի որակավորված՝ նրանում մտավոր աշխատանքի ֆունկցիաների և ստեղծագործական տարրերի զգալի ավելացմամբ։ Դրան համապատասխան, պահանջվում է ավելի բարձրացնել ֆիզիկական աշխատանքի մարդկանց հանրակրթական ու կուլտուրական մակարդակը։

Դրա հետ միաժամանակ, զարգացած սոցիալիզմի պայմաններում անչափ մեծանում են ժողովրդական կրթության վերելքի համար նյութական միջոցների և մարդկային ռեսուրսների առանձնացման հասարակության հնարավորությունները։ Հանրակրթական դպրոցների ցանցի ընդլայնումը, կրթություն ստանալու հիանալի հնարավորությունները ֆիզիկական աշխատանքի մարդկանց հանրակրթական մակարդակի զգալի բարձրացման հիմք հանդիսացան։ Դրա շնորհիվ էապես կրճատվեց ֆիզիկական և մտավոր աշխատանքի մարդկանց միջին կրթական մակարդակի տարբերությունը։ Այսպես, 1933 թ. մտավոր աշխատողների կազմում բարձրագույն և միջնակարգ (լրիվ և թերի) կրթություն ունեցողների տեսակարար կշիռը 11,6 անգամ գերազանցում էր ֆիզիկական աշխատանքի մարդկանց համապատասխան կատեգորիայի տեսակարար կշիռը, 1959 թ. այդ տարբերությունը կազմել է 2,8 անգամ, իսկ 1970 թ.՝ 1,8 անգամ։ Համընդհանուր միջնակարգ կրթության իրագործումը և միջնակարգ դպրոցի մակարդակով պրոֆտեխնիկական ուսումնարանների լայն ցանցի զարգացումը զգալիորեն կարագացնեն այդ պրոցեսը։

Ֆիզիկական աշխատանքի որակավորվածության մակարդակի բարձրացման, սոցիալիստական բաշխման հարաբերությունների կատարելագործման հիման վրա աստիճանաբար կրճատվում է ֆիզիկական և մտավոր աշխատանքով զբաղվածների եկամուտների մակարդակի տարբերությունը. 1940 թ. բանվորների միջին աշխատավարձը կազմել է ինժեներա-տեխնիկական աշխատողների միջին աշխատավարձի 40 տոկոսը, իսկ 1970 թ.՝ ավելի քան 70։ Ընթացիկ հնգամյակում այդ տարբերությունն ավելի կկրճատվի։

Զարգացած սոցիալիզմի փուլում գիտատեխնիկական նվաճումների իրացման, ստեղծագործական բովանդակությամբ աշխատանքի հարստացման, նրա պայմանների բարելավման, աշխատաժամանակի կրճատման և ազատ ժամանակի մեծացման, ժողովրդի ընդհանուր կրթական և կուլտուրական մակարդակի բարձրացման նպատակով հասարակության նյութական հնարավորությունների զգալի ավելացման, նրա բարեկեցության մակարդակի բարձրացման պայմաններում ավելի մեծ հնարավորություններ են ստեղծվում ինչպես ֆիզիկական, այնպես էլ մտավոր աշխատանքի մարդկանց բազմակողմանի զարգացման համար։

# ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ԱՌԱՋԱՏԱՐ ԴԵՐԸ ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

**Ս. Ս. ԱՄԻՐՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր

ՀԱՂԹԱՆԱԿԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ և առանձնապես նրա հասուն փուլում բանվոր դասակարգի առաջատար դերի հարցը ստանում է տեսական ու գործնական մեծ նշանակություն: Նկատենք, որ այն նաև արդի գաղափարական պայքարի հիմնական հարցերից մեկն է: Ռևիզիոնիստները գտնում են, թե դեպի հասունության ավելի բարձր աստիճանները սոցիալիստական հասարակության շարժումը, որը փոխում է նրա սոցիալական կառուցվածքը և աստիճանաբար վերացնում դասակարգային տարբերությունները, ինքնաբերաբար օրակարգից հանում է բանվոր դասակարգի առաջատար դերի պրոբլեմը:

Զարգացած սոցիալիզմի պայմաններում բանվոր դասակարգը, գյուղացիությունը և ինտելիգենցիան հանդես են գալիս որպես նոր հասարակարգ կառուցող ակտիվ սոցիալական ուժեր, և հետզհետե հաղթահարվում են նրանց միջև եղած տարբերությունները, ամրապնդվում է նրանց սոցիալ-քաղաքական ու գաղափարական միասնությունը: Բայց այս նոր փուլում աշխատավոր դասակարգերի ու խավերի սոցիալ-տնտեսական դրության և նրանց զարգացման մակարդակների գիտական խոր վերլուծությունը ցույց է տալիս, որ բանվոր դասակարգն իր առաջատար դերը պահպանում է նաև հասուն սոցիալիզմի պայմաններում, և դա կոմունիստական շինարարության հաջողությունների գրավականն է:

Ելնելով սոցիալիստական հասարակարգի առաջընթացի այս կարևոր օրինաչափությունից, ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց, որ «Կուսակցության ջանքերն այսուհետ էլ ուղղված կլինեն այն նպատակին, որ բանվոր դասակարգի ազդեցությունը մեր հասարակության կյանքի բոլոր ոլորտներում աճի ու ամրապնդվի, որ նրա ակտիվությունն ու նախաձեռնությունն է՛լ ավելի բեղմնավոր արդյունքներ տան» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 97):

Զարգացած սոցիալիզմի փուլում բանվոր դասակարգի առաջատար դերի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի տեսական եզրակացություններին ու գործնական հանձնարարականներին հավանություն տվեցին սոցիալիստական մյուս երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունները: Հաստատվեց լենինյան դրույթն այն մասին, որ աշխատավոր մասսաների հեղափոխական պայքարում բանվոր դասակարգն առաջատար ու ղեկավար դեր կխաղա ոչ միայն հին հասարակարգի խորտակման, այլ նաև «...նոր, սոցիալիստական հասարակարգի ստեղծման գործում, դասակարգերի լիակատար ոչնչացման համար մղվող ամբողջ պայքարում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 514): Ինչպես հայտնի է, զարգացած սոցիալիզմը դասակարգերի լիակատար ոչնչացման համար պայքարի էտապ է, կոմունիստական հասարակարգի բարձր փուլին անցնելու ժամանակաշրջան, երբ, բնականաբար, շարունակում է իր առաջատար դերը կատարել բանվոր դասակարգը: Ընդ որում, պետք է նկատի ունենալ, որ կոմունիստական հասարակարգի կառուցման համար պայքարի ամեն մի նոր փուլում փոխվում են բանվոր դասակարգի առաջատար դերի իրականացման պայմաններն ու խնդիրները:

Ինչո՞վ է պայմանավորված բանվոր դասակարգի առաջատար դերը հասուն սոցիալիզմի փուլում, որո՞նք են դրա սոցիալ-տնտեսական օբյեկտիվ հիմքերը, այդ դերի իրականացման ու ամրապնդման նոր պայմանները:

Որպես կանոն, հասարակական զարգացման պրոցեսում առաջատար է այն դասակարգը, որը վճռական դեր է խաղում երկրի արտադրաուժերի վերելքի ապահովման ու սոցիալական վերափոխումների իրականացման գործում: ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց, որ բանվոր դասակարգը եղել և մնում է հասարակության հիմնական արտադրող ուժը, որի աշխատանքով են ստեղծվում երկրի գլխավոր հարստությունները: Ժողովրդական տնտեսության այն բնագավառները, որտեղ զբաղված է բանվոր դասակարգը, տալիս են հասարակական համախառն արտադրանքի մոտ 90 տոկոսը: Բանվորները երկրի աշխատավորների ամենամեծաքանակ խումբն են: Նրանց թիվը հասնում է 70 միլիոնի, որը կազմում է զբաղված բնակչության ավելի քան 60 տոկոսը: Ընդ որում բանվորների 86 տոկոսն աշխատում է նյութական արտադրության մեջ: Նկատենք, որ բանվորները մեր հասարակության ամենամեծաքանակ արտադրող ուժը դարձան երկրում սոցիալիզմի հաղթանակից հետո, հատկապես հետպատերազմյան ժամանակաշրջանում: Այսպես, 1940 թ. ժողովրդական տնտեսության մեջ զբաղված էին մոտ 30 մլն կոլտնտեսային գյուղացի, 24 մլն բանվոր և 10 մլն ծառայող: Երեք տասնամյակ հետո, 1972 թ. երկրի զբաղված բնակչության մոտ 68 մլն-ը բանվոր էր, 31 մլն-ը՝ ծառայող և 16 մլն-ը՝ կոլտնտեսային գյուղացի:

Այսպիսով, զբաղված բնակչության մեջ բանվոր դասակարգի տեսակարար կշռի աճը արդի փուլում նրա առաջատար դերի օբյեկտիվ հիմքերից է:

Ռևիզիոնիստները հայտարարում են, որ եթե ինտելիգենցիան չներառնենք բանվոր դասակարգի կազմի մեջ, ապա վերջինս չի աճի քանակապես ու, հետևապես, չի կարող կատարել իր առաջատար դերը: Նման պնդումները բխում են արևմուտքում լայն տարածում գտած հակամարքսիստական ու հակագիտական այն տեսությունից, ըստ որի գիտատեխնիկական առաջընթացը հանգեցնում է բանվոր դասակարգի թվի կրճատման ու սոցիալական սահմանների նեղացման, հետևապես և՝ նրա անհետացման:

Վերջին տասնամյակում Սովետական Միության, ինչպես և սոցիալիստական մյուս երկրների զարգացման պրակտիկան լիովին հերքում է այդ տեսությունը: Ճիշտ է, գիտատեխնիկական առաջընթացի համեմատ նվազել են բանվոր դասակարգի քանակական աճի տեմպերը (ՍՍՀՄ-ում բանվորների թիվը 1951—1960 թթ. աճել է 60, իսկ 1961—1972 թթ.՝ 47 տոկոսով), բայց վերջին տասնամյակում մեր երկրում գիտատեխնիկական ավելի բուռն առաջընթացը ոչ միայն չկրճատեց բանվոր դասակարգի թիվը, այլ, ընդհակառակը, նպաստեց նրա աճին. բանվորների թիվն ավելացավ 22 միլիոնով: Նշելով, որ ավտոմատացումը կրճատում է բանվորների թիվը, ռևիզիոնիստներն ընդգծում են արտադրաուժերի զարգացման վրա գիտատեխնիկական հեղափոխության ներգործության միայն մի կողմը: Նրանք անտեսում են, որ այդ նույն գիտատեխնիկական հեղափոխությունն առաջ է բերում ինչպես նոր արտադրություններ, արտադրության նոր ճյուղեր, այնպես էլ նոր պրոֆեսիաներ, հետևաբար և՝ արտադրության ընդլայնման նոր պահանջներ: Իններորդ հնգամյակի չորս տարում ՍՍՀՄ-ում կառուցվել է 1.700 խոշոր գործարան: Բացի դրանից, պետք է նկատի ունենալ, որ գիտատեխնիկական հեղափոխության հետևանքով մեծ տեղաշարժեր են կատարվում նաև ոչ արտադրական ոլորտներում, հատկապես

սպասարկման բնագավառում, որտեղ աշխատանքի մեքենայացումը կամ ինդուստրացումը ստեղծում է բանվոր դասակարգի նոր ջոկատ։ Այսպիսով, ինչպես վկայում է զարգացման պրակտիկան, բանվոր դասակարգի թիվը և բնակչության մեջ նրա տեսակարար կշիռը շարունակում են աճել։

Սակայն, ինչպես նշեց ՍՄԿԿ XXIV համագումարը, սոցիալիստական հասարակարգում բանվոր դասակարգի տեղը որոշվում է ոչ միայն նրա թվով, որը կարող է փոխվել էկոնոմիկայի զարգացման ու գիտատեխնիկական հեղաշրջման տեմպերի համեմատ։ Նկատենք, որ բանվոր դասակարգը մեր հասարակության հիմնական արտադրող ուժն էր նաև սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում, երբ զբաղված բնակչության մեջ, գյուղացիության համեմատությամբ, ուներ ցածր տեսակարար կշիռ։ Ինչպես այն ժամանակ, այնպես էլ զարգացած սոցիալիզմի փուլում, բանվոր դասակարգը հանդիսանում է նոր հասարակարգի նյութատեխնիկական բազան կառուցող հիմնական ուժը։ Գործելով ժողովրդական տնտեսության առանցքը կազմող արդյունաբերության ու շինարարության մեջ, նա իրականացնում է արտադրության հիմնական միջոցների արտադրությունը, այսինքն՝ ապահովում է տնտեսության բոլոր ճյուղերի, այդ թվում և գյուղատնտեսության զարգացման ամուր հիմքերը։ Այդ տեսակետից սոցիալիստական էկոնոմիկայում առավել վճռական դեր է խաղում բանվոր դասակարգի ինդուստրիալ ջոկատը, որի ջանքերով արդյունաբերության և շինարարության մեջ ստեղծվում է ՍՍՀՄ-ի ազգային եկամտի երկուերրորդը, չնայած այդ ճյուղերում զբաղված բանվորներն ու ծառայողները կազմում են ամբողջ աշխատող բնակչության մեկերրորդը։

Հետզհետե ընդլայնվում են նաև բանվոր դասակարգի ոչ ինդուստրիալ ջոկատների գործունեության մասշտաբները, աճում է նրանց դերը տնտեսության մյուս ճյուղերում։ 1972 թ. բանվորները կազմում էին տրանսպորտի աշխատողների մոտ չորսհինգերորդը, առևտրի աշխատողների՝ երեքչորրորդը, կապի աշխատողների՝ մեկերկրորդը։ Անգամ գիտության, լուսավորության և առողջապահության բնագավառներում բանվորներն արդեն կազմում են աշխատողների մոտ մեկերրորդը։ Վերջին տասնամյակում բանվոր դասակարգի դերը մեծ չափով աճել է նյութական արտադրության այնպիսի կարևոր ճյուղում, ինչպիսին գյուղատնտեսությունն է։ Այն դրսևորվում է ոչ միայն գյուղատնտեսության ինդուստրացման պրոցեսում, գյուղի համար մեծաքանակ ու բազմապիսի արտադրամիջոցների թողարկման գործում, այլ նաև գյուղատնտեսական մթերքների անմիջական արտադրության մեջ։ 1960—1972 թթ. երկրի գյուղատնտեսության մեջ աշխատող բանվորների թիվն աճեց ավելի քան 50 տոկոսով և հասավ 8,4 միլիոնի։

Ինչպես տեսնում ենք, բանվոր դասակարգը գործում է տնտեսության բոլոր բնագավառներում, բայց նրա՝ որպես հիմնական արտադրող ուժի, գործունեության գլխավոր տեղամասն արդյունաբերությունն է։ Թե այս բնագավառում բանվոր դասակարգի գործունեության մասշտաբներն արդի էտապում ինչպիսի տեմպերով են ընդլայնվում, ցույց է տալիս հետևյալ համեմատությունը. 1960 թ. երկրի արդյունաբերությունը տվել է 189, իսկ 1972 թ.՝ 458 միլիարդ ռուբլու համախառն արտադրանք։ Կարևոր է նշել, որ այդ մեծ արդյունքներին բանվոր դասակարգը, գլխավորապես, հասել է աշխատանքի արտադրողականության, այսինքն՝ իր արտադրական գործունեության արդյունավետության բարձրացման շնորհիվ։

Այս առնչությամբ նշենք, որ զարգացած սոցիալիզմի արդի փուլում բանվոր դասակարգը հանդես է գալիս որպես նոր ու բարձրորակ արտադրող ուժ, որը կարող է լուծել ժամանակակից հասարակական արտադրության առաջընթացի բարդ ու բազմազան խնդիրները։ Ընդ որում, փոխվել են նաև նրա արտադրական գործունեության պայմանները, որոնք էլ հենց նպաստում են նրա աշխատանքի արդյունավետության բարձրացմանը։

Արդյունաբերության կենտրոնացման ու համակենտրոնացման շնորհիվ մեծ չափով բարձրացել է բանվոր դասակարգի կոնսոլիդացիայի աստիճանը. 1972 թ. 1.000-ից ավելի բանվոր ունեցող ձեռնարկություններում կենտրոնաց-



ված էր արդյունաբերության բանվորների 61 տոկոսը։ Ընդ որում, այդ ձեռնարկությունները տնօրինում էին ինքնուրույն բալանսի վրա գործող արդյունաբերական բոլոր ձեռնարկությունների հիմնական արտադրական ֆոնդերի 67,8 տոկոսը և թողարկում էին նրանց համախառն արտադրանքի 60,6 տոկոսը։

Մեծ չափով աճել է բանվորի տեխնիկական զինվածությունը։ Արտադրության մեջ ժամանակակից բանվորն օգտագործում է բարձր արտադրողական մեքենաներ, մեխանիզմներ ու բարդ սարքավորումներ։ Արագորեն լիկվիդացվում է ձեռքի ծանր ֆիզիկական աշխատանքը։ Միայն 1974 թ. ձեռքի աշխատանքից մեքենայականի է փոխադրվել 0,5 մլն բանվոր, նույնքան էլ նախատեսվում է փոխադրել հնգամյակի եզրափակիչ տարում։

Բանվոր դասակարգի՝ որպես հասարակության հիմնական արտադրող ուժի գործունեության արդյունավետության բարձրացման մյուս կարևոր ու օբյեկտիվ նախադրյալը նրա կրթական ու կուլտուր-տեխնիկական մակարդակի և պրոֆեսիոնալ վարպետության մեծ աճն է։ Բավական է նշել, որ 1973 թ. բանվորների 66 տոկոսն ուներ յոթնամյակից ոչ պակաս կրթություն։

Գործելով արդյունաբերության բնագավառում, բանվոր դասակարգը հանդես է գալիս որպես արտադրության ու հասարակական աշխատանքի առաջավոր ձևերի կրող։ Դրանով իսկ նրա արտադրական գործունեության հետ է կապված գիտատեխնիկական առաջընթացը։ Արևմուտքում լայն տարածում է գտել այն թեզը, թե գիտատեխնիկական առաջընթացը, իբր, անմիջական արտադրողին ետ է մղել արտադրության ստվերը, նրան վերածելով ինչ-որ աբստրակցիայի, իսկ մի շարք ռևիզիոնիստներ պնդում են, թե սոցիալիստական երկրներում բանվոր դասակարգը վերածվել է պահպանողական ուժի և, իբր, այլևս անընդունակ է ընկալելու առաջադիմական տենդենցները։ Ռևիզիոնիստները գիտատեխնիկական առաջընթացն ապահովող միակ ուժը համարում են գիտատեխնիկական մտավորականությունը։

Անշուշտ, տվյալ բնագավառում վերջինիս մեծ դերը չի անտեսվում։ Սակայն բուրժուական գաղափարախոսների և ռևիզիոնիստների պնդումները հերքվում են սոցիալիստական երկրների պրակտիկայով, իսկ այն ցույց է տալիս, որ առանց բանվոր դասակարգի ստեղծագործական ջանքերի ու մեծ աշխատանքի, մեր օրերում արտադրաուժերը զարգանալ չեն կարող և գիտության ու տեխնիկայի որևէ էական նվաճում չի արմատավորվի արտադրության մեջ։ Ավելին, սոցիալիստական երկրներում գիտատեխնիկական առաջընթացը նպաստում է բանվորների տեխնիկական ստեղծագործության զարգացմանը, որը, հատկապես, դրսևորվում է ծավալվող գյուտարարական ու ռացիոնալիզատորական շարժմանը բանվոր դասակարգի ակտիվ մասնակցության մեջ։ Սովետական Միությունում բարձրորակ բանվորների 40 տոկոսը գյուտարարներ ու ռացիոնալիզատորներ են։ ԳԴՀ-ում 1972 թ. նորարարական շարժմանը մասնակցում էր յուրաքանչյուր երրորդ բանվորը։ Տվյալ հարցում որոշակի դրսևորվում է կապիտալիզմի և սոցիալիզմի տարբերությունը։ Սոցիալիզմի պայմաններում ոչ միայն զարգանում է բանվորների տեխնիկական միտքը, ոչ միայն նրանք հանդես են գալիս ռացիոնալիզատորական առաջարկներով, այլև ինժեներների, տեխնիկների ու գիտնականների հետ ստեղծագործական համագործակցությամբ իրականացնում են դրանք։ Առաջավոր շատ բանվորներ դարձել են գիտատեխնիկական ընկերությունների ակտիվ անդամներ։ Իսկ գյուտարարների և ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության անդամների կեսից ավելին բանվորներ են։ Դա համոզիչ վկայությունն է այն բանի, որ գիտատեխնիկական բուռն առաջընթացի արդի պայմաններում բանվոր դասակարգը հաջողությամբ է կատարում հասարակության հիմնական արտադրող ուժի իր դերը։ Նրա ստեղծագործական ուժերի դրսևորման կարևոր ասպարեզ է ծավալվող սոցիալիստական մրցությունը, որը բանվորից պահանջում է ստեղծագործական մոտեցում ունենալ աշխատանքի հանդեպ, փնտրել և գտնել արտադրանքի թողարկումն ավելացնելու նոր հնարավորություններ ու ռեզերվներ։ Սովետական իրականությունը խեղաթյուրող բուր-

ժուական գաղափարախոսները ճգնում են ապացուցել, թե իբր սովետական բանվորի սոցիալական ակտիվությունը գնալով նվազում է, թե նա այսօր չի ցուցաբերում այնպիսի աշխատանքային ակտիվություն ու հերոսություն, ինչպես առաջին հնգամյակների տարիներին: Այդ դեպքում ինչի՞ մասին է վկայում այն փաստը, որ 9-րդ հնգամյակի եզրափակիչ տարվա խնդիրները կենսագործելու համար ծավալված համամիութենական սոցիալիստական մրցության մեջ ընդգրկված է շուրջ 80 միլիոն աշխատավոր, որոնց կեսը մասնակցում է կոմունիստական աշխատանքի համար ծավալված շարժմանը: Հնգամյակի որոշիչ տարում՝ 1974 թ. հանդիպակաց պլաններ են ընդունել ու կատարել երկրի շուրջ 14 հազար ձեռնարկությունների կոլեկտիվներ: Նույն տարում Սովետական Հայաստանում սոցիալիստական մրցության մեջ էր մտել 709 հազար մարդ, այսինքն՝ հանրապետության բանվոր-ծառայողների 90 տոկոսից ավելին:

Բանվոր դասակարգի առաջատար դերի սոցիալ-տնտեսական հիմքերից է նրա անմիջական կապը հանրային սեփականության բարձրագույն ձևի՝ համաժողովրդական-պետական սեփականության հետ, որին պատկանում է ՍՍՀՄ հիմնական արտադրական ֆոնդերի ավելի քան 90 տոկոսը: Այդ աշխատավոր դասակարգի հերոսական ջանքերով է ստեղծվել ու մեծ չափերով ընդլայնվել համաժողովրդական-պետական սեփականությունը, որը վճռական ներգործություն է ունենում կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականության, հետևաբար և մյուս աշխատավոր դասակարգի՝ գյուղացիության կյանքի սոցիալ-տնտեսական հիմքերի զարգացման վրա:

ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց, որ բանվոր դասակարգի «...հեղափոխականությամբ, կարգապահությամբ, կազմակերպվածությամբ և կոլեկտիվիզմով է որոշվում նրա առաջատար դիրքը սոցիալիստական հասարակական հարաբերությունների սիստեմում» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 96): Առավելապես նրա հիմնական մասսային հատուկ է անհաշտ վերաբերմունքը բուրժուական ու մանրբուրժուական անհատապաշտության ու էգոիզմի հանդեպ, հարգանքը աշխատանքի ու հանրային սեփականության, քաղաքացիական հոգատարությունը հասարակական-պետական գործերի նկատմամբ:

Իր էությամբ բանվոր դասակարգը հանդես է գալիս որպես նոր հասարակարգի սոցիալական կորիզը, իսկ նրա գաղափարական ու բարոյական հատկանիշները, աշխատանքի ու կենցաղի ձևերը, վարքագծի կուլտուրան համարվում են կյանքի միասնական սոցիալիստական-կոմունիստական ապրելակերպի ձևավորման հիմքը:

Այս առումով դրսևորվում է բանվոր դասակարգի առաջատար դերի մեկ ուրիշ կարևոր կողմը: Նա սովետական հասարակության արդի սոցիալական զարգացման, այսինքն՝ լիակատար սոցիալական միասեռության հաստատման պատմական պրոցեսի շարժիչ ուժն է: Զարգացած սոցիալիզմի պայմաններում նույնպես կիրառելի է Էնգելսի այն թեզը, որ «Բանվոր դասակարգի դրությունը հանդիսանում է արդիականության բոլոր սոցիալական շարժումների իրական հիմքն ու ելակետը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 2, стр. 238):

Ինչպես հայտնի է, սովետական հասարակության սոցիալական զարգացման գլխավոր ուղին աշխատավորների հասարակական խմբերի՝ բանվորների, գյուղացիների, մտավորականության մերձեցումն է, նրանց միջև եղած սոցիալ-դասակարգային տարբերությունների աստիճանական հաղթահարումը: Ընդհանրացնելով այդ պատմական պրոցեսը, ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց. «Բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի մերձեցումը, սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական համախմբությունների դաստիարակումը, նրա սոցիալական միասնության ամրապնդումը մեզ մոտ տեղի են ունենում մարքսլենինյան գաղափարախոսության հիման վրա, որն արտահայտում է բանվոր դասակարգի սոցիալիստական շահերն ու կոմունիստական իդեալները» (ՍՄԿԿ



XXIV համագումարի նյութերը, էջ 96): Այդ ամենից առաջ նշանակում է, որ աշխատավորների մյուս հասարակական խմբերը լիովին կանգնած են բանվոր դասակարգի դիրքերում, յուրացրել են նրա գաղափարախոսությունը՝ մարքսիզմ-լենինիզմը և իրենք ևս ակտիվորեն պայքարում են կոմունիստական իդեալների իրականացման համար:

Սովետական հասարակության դասակարգերի ու խավերի մերձեցումը, որը հանգեցնում է սոցիալական միասեռության, փոխադարձ ներգործման դիալեկտիկական պրոցես է, որտեղ, սակայն, որոշակի նկատվում է մի հիմնական տենդենց. աշխատավորների մյուս հասարակական խմբերը մերձենում են բանվոր դասակարգին, յուրացնում նրա բարոյական հատկությունները ու հեռանկարային սոցիալիստական գծերը, կրում այդ առաջատար դասակարգի ազդեցությունը:

Սոցիալական զարգացման այդ բարդ պրոցեսի դրսևորման որոշակի ձևերից է բանվոր դասակարգի ու գյուղացիության մերձեցումը: «Գյուղատնտեսության արտադրողական ուժերի աճը, գյուղատնտեսական աշխատանքի աստիճանական վերածումն ինդուստրիալ աշխատանքի տարատեսակի, գյուղի կուլտուրայի վերելքը և կենցաղի վերակառուցումը՝ այդ ամենը փոխում է գյուղացու սոցիալական դեմքն ու հոգեբանությունը: Նրա մեջ երևան են գալիս բանվորի հետ ընդհանուր ավելի շատ գծեր...» (Նույն տեղը, էջ 97):

Սովետական հասարակության սոցիալական զարգացման պրոցեսում բանվոր դասակարգի առաջատար դերը որոշակի արտահայտվում է նաև ինտելիգենցիայի հետ նրա մերձեցման մեջ: Աշխատավորների այդ երկու հասարակական խմբերի մերձեցումը երկկողմանի պրոցես է, որն ընթանում է հանդիպակաց տենդենցների խորացման և փոխներթափանցման ճանապարհով: Չնայած դրան, տվյալ պրոցեսում առաջատար դեր է խաղում բանվոր դասակարգը, որը ներգործում է մտավորականության զարգացման վրա և նրա շարքերի համալրման գլխավոր աղբյուրներից մեկն է: Ամեն տարի, առանց արտադրությունից կտրվելու, մասնագիտական կրթություն են ստանում տասնյակ հազարավոր բանվորներ, որոնց մեծ մասը համալրում է մտավորականների շարքերը: Նկատենք, որ արդի գիտատեխնիկական հեղափոխությունն ավելի շարժուն է դարձրել բանվոր դասակարգի և մտավորականության սոցիալական սահմանները և նպաստում է նրանց ներթափանցմանն ու արագ մերձեցմանը:

Բանվոր դասակարգի կազմում առաջ է եկել բանվոր մտավորականների ջոկատը, որն զբաղված է արտադրության առավել բարդ տեղամասերում և իր գործունեության մեջ հիանալի զուգակցում է մտավոր ու ֆիզիկական աշխատանքի տեսակները: Դրանք բարձրորակ բանվորներ են, որոնք ունեն կուլտուր-տեխնիկական այնպիսի մակարդակ, որը քիչ բանով է զիջում ինժեներա-տեխնիկական անձնակազմի մակարդակին: Դրա հետ միասին, մտավորականության ինժեներատեխնիկական ջոկատի առանձին խավեր ձուլվում են բանվոր դասակարգին, արտադրության մեջ գրավելով բանվորական տեղեր: Այսպես, այսօր ՍՍՀՄ-ի արդյունաբերության մեջ կան ինժեների և տեխնիկի դիպլոմով 700 հազար մասնագետներ, որոնք աշխատում են բանվորական տեղերում:

Բացի այս ամենից, նյութական արտադրության ոլորտում, բանվորական կոլեկտիվներում զբաղված մտավորական-մասնագետները ավելի շատ են կրում բանվոր դասակարգի բարերար ազդեցությունը, բանվորների հետ ապրում են արտադրության միևնույն շահերով ու հոգսերով, մասնակցում հասարակական-քաղաքական միևնույն միջոցառումներին, մտնում միևնույն կուսակցական և արհմիութենական կազմակերպությունների մեջ: Նման պայմաններում ինտելիգենցիան ավելի արագ է յուրացնում բանվոր դասակարգի հիանալի գծերը՝ հեղափոխականությունը, կարգապահությունը, կազմակերպվածությունն ու կոլեկտիվիզմը:

ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԸ շարունակում է առաջատար դեր խաղալ նաև երկրի քաղաքական կյանքում, նրա կա-

ռավարման մեջ։ Այդ դերն ամենից առաջ իրականացվում է կոմունիստական կուսակցության գործունեության միջոցով։ Նկատենք, որ ռևիզիոնիստներն ամեն կերպ փորձում են կոմունիստական կուսակցությունը հակադրել բանվոր դասակարգին և իրերի դրությունը այնպես են ներկայացնում, թե իբր առաջինը ղեկավարությունից հեռացրել է երկրորդին, և հետզհետե բանվոր դասակարգը կորցնում է իր դիրքերը կուսակցության մեջ, վերջինիս շարքերում պակասում է բանվորների թիվը և այլն։

Կուսակցությունը սովետական հասարակության ղեկավար քաղաքական ուժն է։ Այդ հանգամանքը, սակայն, ոչ միայն չի անտեսում բանվոր դասակարգի առաջատար դերը, այլև ավելի է ամրապնդում այն։ Լինելով ողջ ժողովրդի առաջավոր ջոկատը, կոմունիստական կուսակցությունն ամենից առաջ հանդես է գալիս որպես բանվոր դասակարգի քաղաքական կազմակերպություն, նրա կազմակերպվածության բարձրագույն ձև։

Ի դեպ, պետք է նկատի ունենալ, որ սոցիալիզմի պայմաններում և հատկապես նրա հասուն փուլում, երբ կուսակցությունը դառնում է ամբողջ ժողովրդի առաջավոր ջոկատը, պահանջվում է ավելի ամրապնդել բանվոր դասակարգի և նրա ավանգարդի կապերը։ Առաջին հայացքից թվում է, թե նման հարցադրումը տեղին չէ. կուսակցությունը բանվոր դասակարգի առաջավոր ջոկատն է, նրանց միջև կապերի ի՞նչ ամրապնդման մասին է խոսքը։ Սակայն, ինչպես վկայում է պատմական փորձը, պրոլետարիատի կողմից քաղաքական իշխանությունը գրավելուց հետո, երբ կոմունիստական կուսակցությունը դառնում է կառավարող, հասարակության ղեկավարումն իրականացնող ուժը ձեռք է բերում հարաբերական ինքնուրույնություն, առաջ է գալիս կուսակցության և բանվոր դասակարգի կապերի թուլացման վտանգ, որը կարող է մեծ վնաս հասցնել սոցիալիզմի գործին։ Մի շարք սոցիալիստական երկրներում (Հունգարիայում, Չեխոսլովակիայում, Լեհաստանում) տեղի ունեցած նեգատիվ քաղաքական իրադարձությունները և հակահեղափոխական ելույթները ցույց տվեցին, որ այդ դեպքերի գլխավոր պատճառներից մեկը կուսակցության ու բանվոր դասակարգի կապերի թուլացումն էր։ «Հունգարիայի սոցիալիստական բանվորական կուսակցությունը,— գրում է Կենտկոմի անդամ Շ. Յակաբը,— եզրակացություն անելով հակահեղափոխության դասերից, հատուկ ուշադրություն է դարձնում բանվոր դասակարգի հետ կապերի ամրապնդմանն ու զարգացմանը։ Մեր կուսակցությունն իր պատմական փորձից յուրացրել է, որ սոցիալիզմի հաջող շինարարության հիմնական պայմանը անխախտ կապն է կուսակցության և բանվոր դասակարգի միջև։ Դա ՀՍԲԿ-ի քաղաքականության գլխավոր, մշտական տարրն է» (Рабочий класс и его партия в современном социалистическом обществе, Прага, 1973 г., стр. 130)։

Բանվոր դասակարգի առաջատար դերի ամրապնդման շահերի տեսակետից երկրորդական չէ այն հարցը, թե ինչպե՞ս է ձևավորվում կուսակցության սոցիալական կազմը և այնտեղ ի՞նչ տեսակարար կշիռ ունի բանվոր դասակարգը։ Այս առումով միանգամայն հասկանալի է վերջին տարիներին սոցիալիստական երկրների կոմունիստական կուսակցությունների ցուցաբերած գործնական մտահոգությունը՝ իրենց սոցիալական կազմում ապահովելու բանվոր դասակարգի առաջատար դիրքը։

ՍՄԿԿ XXIV համագումարից հետո մեր կուսակցության շարքերը նոր ընդունվածների մեջ բանվորները կազմում են 60, իսկ արդյունաբերական խոշոր կենտրոններում՝ ընդհուպ 70 տոկոս։

Անդրադառնալով կուսակցության սոցիալական կազմում բանվոր դասակարգի առաջատար դիրքն ապահովելու հարցին, ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց. «Մենք կշարունակենք այդ գիծը, այն լիովին համապատասխանում է մեր կուսակցության բնույթին, մեր սովետական հասարակության մեջ բանվոր դասակարգի տեղին ու դերին» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 123)։



Հասարակական-քաղաքական կյանքում բանվոր դասակարգի առաջատար դերը դրսևորվում է նաև սովետական պետության գործունեության մեջ։ Թեպետ վերջինս պրոլետարիատի դիկտատուրայից վերածվել է համաժողովրդական պետության, այնուհանդերձ, նրա գործունեության մեջ նորից շատ որոշակի զգացվում է բանվոր դասակարգի առաջատար դիրքը։ Դա ոչ միայն արտահայտվում է այն բանում, որ սովետական պետությունն այսօր էլ բանվոր դասակարգի պատմական միսիայի իրականացման, այսինքն՝ կոմունիզմի կառուցման հիմնական գործիքն է։ Լինելով հասարակության ամենակազմակերպված, կարգապահ ու հեղափոխական ուժը, բանվոր դասակարգը առաջատար դեր է խաղում սովետական պետության պրակտիկ գործունեության մեջ։

Ի դեպ, մեր գաղափարական հակառակորդները պնդում են, թե սոցիալիստական հասարակության կազմակերպական-քաղաքական սիստեմում բանվոր դասակարգը առաջատար դիրք չի գրավում, քանի որ երկիրը կառավարում են ոչ բանվորները։ Սա իրական վիճակի բացահայտ խեղաթյուրում է։ Դեռևս սովետական իշխանության արշալույսին Վլադիմիր Իլյիչ Լենինն ասել է. «...կառավարել կարողանալը երկնքից չի իջնում և սուրբ հոգուց չի տրվում և այն բանից, որ տվյալ դասակարգը առաջավոր դասակարգ է հանդիսանում, նա միանգամից կառավարելու ընդունակ չի դառնում... իսկ կառավարելու, պետական կառուցվածքի համար մենք պետք է ունենանք մարդիկ, որոնք տիրապետում են կառավարելու տեխնիկային, որոնք ունեն պետական և տնտեսական փորձ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 30, էջ 584—586)։

Սոցիալիստական շինարարության պրոցեսում բանվոր դասակարգի առաջավոր ներկայացուցիչներն առաջ են քաշվել կուսակցական ու պետական մարմիններում և նրանք ժամանակին ձեռք են բերել պետական ու տնտեսական փորձ և հաջողությամբ կառավարում են երկիրը։ Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, երկրամասային ու մարզային կոմիտեների քարտուղարների, մինիստրների սովետների, երկրամասային ու մարզային գործկոմների նախագահների 80 տոկոսը, ՍՍՀՄ մինիստրների և պետական կոմիտեների նախագահների 70 տոկոսն իրենց գործունեությունն սկսել են որպես բանվոր ու գյուղացի։ Երկրի խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների դիրեկտորների կեսից ավելին անցյալում եղել են բանվորներ։ Բացի դրանից, բանվոր դասակարգի կրթական ու կուլտուրական մակարդակի, գիտակցականության ու կազմակերպվածության աճին համապատասխան պետական ու կուսակցական մարմիններում անշեղորեն ավելանում է բանվորների թիվը։

Սոցիալիզմի օրոք հասարակության կառավարման մեջ բանվոր դասակարգի առաջատար դերն իրականացվում է ոչ միայն պետական մարմինների, այլև մասսայական կազմակերպությունների ճյուղավորված ցանցի միջոցով և, առաջին հերթին, այնպիսի կազմակերպությունների, ինչպիսիք են արհմիությունններն ու կոմերիտմիությունը։

Արհմիությունները լիովին ընդգրկում են բանվորությանը, ապահովում նրա մասնակցությունը երկրի սոցիալ-տնտեսական ու քաղաքական կյանքին, արտադրության կառավարմանը։ Դրա դրսևորման կարևոր ձևերից են արտադրական մշտական խորհրդակցությունները, որոնց միջոցով բանվորներն ակտիվորեն մասնակցում են հասարակական արտադրության զարգացման հարցերի լուծմանը։ Ինչպես նշեց ՍՄԿԿ XXIV համագումարը, զարգացած սոցիալիզմի պայմաններում նույնպես արհմիությունները սոցիալիստական դեմոկրատիայի ընդհանուր սիստեմի, պետական ու հասարակական գործերը կառավարելու մեջ աշխատավորների ներգրավման կարևորագույն օղակներից են։ Դրանց ֆունկցիաների ընդլայնման նպատակով կուսակցության վերջին տարիների որոշումներն իրենց հերթին նպաստեցին զարգացած սոցիալիզմի փուլում բանվոր դասակարգի առաջատար դերի ամրապնդմանը։

# ՄՇՏԱԿԱՆ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԱԹԵԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆԸ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԱՐԴԻ ՓՈՒԼԻ խնդիրների ստեղծագործական վերլուծության և առանձնահատկությունների հաշվառման հիման վրա ՍՄԿԿ XXIV համագումարը պահանջեց է՛լ ավելի կատարելագործել կուսակցության գաղափարական աշխատանքը, ուժեղացնել աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը, սովետական բոլոր մարդկանց մեջ արմատավորել գիտական աշխարհայացք և կոմունիստական բարոյականություն: Այդ խնդրի կենսագործումը պահանջում է հետևողական պայքար մղել սովետական բոլոր մարդկանց գիտակցությունն անցյալի վերապրուկներից, այդ թվում՝ կրոնական ազդեցությունից ձերբազատելու համար: «Պայքարն այն բանի դեմ, ինչը մենք անվանում ենք անցյալի մնացուկներ մարդկանց գիտակցության և արարքների մեջ,— նշել է Լ. Ի. Բրեժնևը,— այնպիսի գործ է, որը պահանջում է կուսակցության, մեր հասարակության բոլոր առաջավոր գիտակից ուժերի մշտական ուշադրությունը» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը կուսակցության XXIV համագումարին, «Հայաստան» հրատ., 1971, էջ 132):

Միանգամայն ակնբախ է կրոնական մտածելակերպի ու գործելակերպի անհարիրությունը սովետական հասարակարգի բնույթին: Բնական գիտությունների նվաճումներն օրեցօր խորտակում են կրոնական առասպելները, իսկ երկրի տնտեսական և քաղաքական հաջողությունները համոզիչ ցույց են տալիս, որ հողագնդի վրա սեփական երջանկությունն արարողը, սեփական ճակատագրի տերը ինքը՝ ստեղծագործ մարդն է: Մատերիալիստական աշխարհայացքը մեր երկրում վաղուց է տիրապետող դարձել: Կրոնական կազմակերպությունները, որոնք հարկադրված են ընդունելու կրոնական գաղափարախոսության ճգնաժամի փաստը, միաժամանակ փորձում են հաղթահարել այդ ճգնաժամային վիճակը, ամեն կերպ հարմարվել արդի իրադրությանը, պահպանել, իսկ եթե հաջողվի, նաև ամրապնդել իրենց խարխլված դիրքերը: Պատահական չէ, որ նրանք այժմ նկատելիորեն ակտիվացրել են իրենց գործունեությունը:

Վերջին տարիներս մեր հանրապետությունում կրոնական ծիսակատարությունների աճման տենդենց է նկատվում: Օգտվելով դրանից, կրոնական պաշտամունքի ներկայացուցիչներն ու եկեղեցին զգալիորեն աճեցնում են իրենց եկամուտները: Ակտիվացել է կրոնական զանազան աղանդների գործունեությունը: Ուղղափառ քրիստոնեական աղանդներից բացի ի հայտ են եկել խառը համայնքներ:

Ուժեղացել է բուրժուական պրոպագանդան, որը ձգտում է բնակչության մեջ կրոնական ակտիվություն զարգացնել՝ օգտագործելով այնպիսի միջոցներ, ինչպիսիք են՝ ռադիոն, տուրիզմը, կրոնա-պրոպագանդիստական գրականությունը: Կրոնը և եկեղեցին բուրժուազիայի վաղեմի ու հավատարիմ դաշնակիցներն են կոմունիզմի դեմ մղած նրա պայքարում: Կրոնական գաղափարախոսությունն օգտագործվում է կապիտալիստական կարգերի պաշտպանության և արդարացման համար: Հիմնականում դրանով է բացատրվում այն հանգամանքը, որ, նախ՝ խոշոր կրոնական կենտրոններն իրենց գործունեությունը



փոխադրել են սոցիալ-քաղաքական հարցերի ոլորտը և երկրորդ՝ բուրժուական պրոպագանդայում նկատելիորեն ավելացել է կրոնական ու եկեղեցական նյութերի կշիռը:

Եթե հետպատերազմյան առաջին տարիներին ՍՍՀՄ-ին հասցեագրված կրոնական հաղորդումներ տվող ռադիոկայաններ բոլորովին չկային, ապա այժմ Եվրոպայի, Ասիայի և Ամերիկայի զանազան երկրներում գործում են կրոնական հարցերում մասնագիտացված ավելի քան տասը ռադիոկենտրոններ: Սովետական Միության ժողովուրդների լեզուներով նրանց հաղորդումներն ընդհանուր առմամբ օրական կազմում են 13—14 ժամ:

Մեր գաղափարական թշնամիները համառորեն պրոպագանդում են կրոնի ու ժողովուրդների ազգային արժեքների նույնացման գաղափարը: Եվ չի կարելի հաշտվել այն վիճակի հետ, երբ աթեիստական պրոպագանդան անբավարար է հանդես գալիս եկեղեցու, այդ թվում՝ հայ եկեղեցու գաղափարախոսության դեմ, երբ հստակ փաստարկներով չեն մերկացվում կրոնը որպես ազգային արժեքների պահապան ներկայացնելու, կրոնասիրությունը ազգային ինքնատիպության հատկանիշ հայտարարելու եկեղեցական քարոզչության փորձերը:

Մեր հասարակարգի պատմությունը և գաղափարական աշխատանքի պրակտիկան համոզիչ վկայում են, որ միմիայն բարենպաստ օբյեկտիվ պայմանները բավական չեն կրոնը հաղթահարելու համար: Անհրաժեշտ է այդ պայմանները զուգակցել հետևողական, լավ կազմակերպված գաղափարական, աթեիստական աշխատանքին: Միայն այդ ուղիով կարելի է կրոնական վերապրուկները հաղթահարել ու լուծել մասսաների գիտական մատերիալիստական աշխարհայացքը ձևավորելու խնդիրը:

Արդի փուլում գիտա-աթեիստական աշխատանքի հիմնական սկզբունքները արտացոլված են մեր կուսակցության ծրագրում, ՍՄԿԿ XXIV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի համապատասխան որոշումներում:

«Կուսակցությունը գաղափարական ներգործության միջոցները,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— օգտագործում է մարդկանց գիտամատերիալիստական աշխարհըմբռնման ոգով դաստիարակելու համար, կրոնական նախապաշարմունքները հաղթահարելու համար, թույլ չտալով վիրավորելու հավատացյալների զգացմունքները: Անհրաժեշտ է սիստեմատիկ լայն գիտաաթեիստական պրոպագանդա մղել, համբերատարությամբ պարզաբանել կրոնական հավատալիքների սնանկությունը, որոնք անցյալներում առաջացել են բնության տարերային ուժերի ու սոցիալական ճնշման հանդեպ մարդկանց անզորության հողի վրա, բնական ու հասարակական երևույթների իսկական պատճառները չիմանալու հետևանքով: Ըստ որում, պետք է հենվել ժամանակակից գիտության նվաճումների վրա, որը գնալով ավելի լրիվ է բացահայտում աշխարհի պատկերը, մեծացնում է մարդու իշխանությունը բնության նկատմամբ և տեղ չի թողնում գերբնական ուժերի վերաբերյալ կրոնի ֆանտաստիկ հերյուրանքների համար» (ՍՄԿԿ ծրագիր, «Հայաստան» հրատ., 1974, էջ 191—192):

Կրոնական գաղափարախոսության դեմ մղվող պայքարում կուսակցության ծրագրային դրույթները հետագայում զարգացան ու կոնկրետացան ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Միջոցառումներ բնակչության աթեիստական դաստիարակությունն ուժեղացնելու մասին» փաստաթղթում: Այդտեղ հատկապես շեշտվեց գաղափարական աշխատանքի այդ կարևոր բնագավառի նկատմամբ կուսակցական ղեկավարությունն ուժեղացնելու անհրաժեշտությունը: ՍՄԿԿ Կենտկոմին կից հասարակական գիտությունների ակադեմիայում ստեղծվել է գիտական աթեիզմի ինստիտուտ, որը կոչված է գիտականորեն մշակելու աթեիզմի հրատապ պրոբլեմները, կոորդինացնելու երկրում տարվող գիտա-աթեիստական ողջ աշխատանքը, պատրաստելու բարձրորակ կադրեր:

Մեր հանրապետությունում որոշ չափով ակտիվացել է կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների, գաղափարական հիմնարկությունների աշխատանքը գիտա-աթեիստական գիտելիքների պրոպագանդման, սոցիա-

տական պրոպագանդան ուժեղացնելու մասին՝ նկատի ունենալով, որ դեռահասների վրա հավատացյալ կանանց կրոնական ազդեցությունն անմիջական է և գերիշխող:

Աթեիստական դաստիարակության ընդհանուր համակարգում կուսկազմակերպությունները պետք է օգտագործեն գիտա-աթեիստական աշխատանքի բազմազան միջոցները, ձևերն ու մեթոդները, վճռական պայքար հայտարարեն անտարբերությանը, ստեղծեն աթեիստական հասարակական կարծիք, այդ գործում ներգրավեն առանց բացառության բոլոր կոմունիստներին, կոմերիտականներին, անկուսակցական ակտիվիստներին, աշխատանքային կոլեկտիվների անդամներին:

«Գիտելիք» ընկերության հանրապետական վարչությունը պետք է հասնի այն բանին, որ դասախոսություններն անցնեն բովանդակալից, գաղափարական բարձր մակարդակով, լինեն հանրամատչելի և հագեցված՝ հայկական եկեղեցու գաղափարախոսության քննադատությամբ:

Հանրապետության բնակչության աթեիստական դաստիարակության ներկայիս վիճակը պահանջում է վճռականապես ակտիվացնել ստեղծագործական մտավորականության մասնակցությունը այդ կարևորագույն աշխատանքին: Անհրաժեշտ է պատճառաբանված գաղափարախոսական գնահատական տալ առանձին գրական գործերին, որոնցում հայկական եկեղեցու դերը չափազանցնող սխալ դրույթներ են նկատվում, մտքեր են արտահայտվում կրոնի անվնասակարության վերաբերյալ:

ՍՄԿԿ Կենտկոմի մշակած «Միջոցառումներ բնակչության աթեիստական դաստիարակությունն ուժեղացնելու մասին» փաստաթղթում աթեիստական աշխատանքի կազմակերպական մակարդակը բարձրացնելու նպատակով, նախատեսված է շրջկոմներին, քաղկոմներին և խոշոր կուսկազմակերպություններին առընթեր ստեղծել աթեիստական աշխատանքի խորհուրդներ, որոնք պետք է միավորեն և համաձայնեցնեն կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, «Գիտելիք» ընկերության, կուլտուր-լուսավորական հիմնարկությունների, դպրոցների, բնակչության շրջանում աթեիստական պրոպագանդայով զբաղվող զանազան գերատեսչությունների ջանքերը:

Այդ ֆունկցիայից ելնելով հենց որոշվում է խորհրդի կազմը, որի մեջ ընդգրկվում են աշխատավորների դեպուտատների սովետի, կոմերիտմիության շրջկոմի (քաղկոմի), արհմիության շրջանային կոմիտեի, տեղական թերթի և ռադիոհաղորդումների, «Գիտելիք» ընկերության շրջանային բաժանմունքի, գիտական հիմնարկությունների, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների, ինչպես նաև ձեռնարկությունների, սովխոզների ու կոլտնտեսությունների, կուլտուրայի տների և ակումբների կուսակցական ու հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչները: Խորհուրդը, որ ստեղծվում է տվյալ կուսկոմիտեի որոշմամբ, որպես կանոն, գլխավորում է կոմիտեի՝ գաղափարական աշխատանքը վարող քարտուղարը: Բնակչության շրջանում տարվող աթեիստական աշխատանքը կոորդինացնելուց բացի, խորհուրդը օգնում է նաև կուսակցական ու հասարակական կազմակերպություններին ընտրելու և պատրաստելու աթեիզմի պրոպագանդիստական կադրեր, ուսումնասիրում, ընդհանրացնում և տարածում է դրական փորձը: Այն միաժամանակ աթեիստական աշխատանքի մեթոդական կենտրոն է, հետևում է անցկացվող միջոցառումների գաղափարական բովանդակությանը, նպաստում կենցաղում սովետական քաղաքացիական տոնակատարությունների և ծեսերի արմատավորմանը:

Կրոնը ծիսակատարությանը բացառիկ նշանակություն է տվել և հիմա էլ տալիս է: Եկեղեցական ծեսերը, լինելով կրոնամոլության դրսևորման առավել մասսայական ձև, գործնականում կրոնի պրոպագանդման հիմնական միջոց են և կազմում են հավատացյալների կրոնական պրակտիկայի առավել հաստատուն հենարանը: Եկեղեցական ծիսակատարությամբ նշվում են մարդու կյանքի կարևոր իրադարձությունները, հատկապես ծնունդը, չափահասությունը, ա-



մուսնությունը և այլն: Ահա թե ինչու անհրաժեշտ է արդյունավետ լուծել նոր,
ոչ կրոնական, սոցիալիստական տոնախմբությունների ու ծեսերի ստեղծման
ու կենցաղում դրանց արմատավորման խնդիրը, մի բան, որ մեծ չափով կնը-
պաստի մարդկանց գիտակցությունից կրոնի վերապրուկների վերացմանը:

Քաղաքացիական ծիսակատարության նյութատեխնիկական բազայի ամ-
րապնդման, կազմակերպիչ-կադրերի պատրաստման, նոր ծեսերի մշակման
ու կատարելագործման, լավագույն փորձի ամփոփման ու պրոպագանդման
նպատակով, աշխատավորների դեպուտատների քաղաքային և շրջանային սո-
վետների գործկոմներին առընթեր պետք է ստեղծվեն քաղաքացիական նոր
տոնախմբությունների ու ծիսակատարությունների հասարակական հանձնա-
ժողովներ կամ խորհուրդներ:

Նոր ծիսակատարությունների կատարելագործման հարցերը պետք է ար-
տացոլվեն կուսակցության շրջկոմների ու քաղկոմների աշխատանքի հեռա-
նկարային, ինչպես և աշխատանքային կոլեկտիվների սոցիալական զարգաց-
ման պլաններում, քննարկվեն կուսբյուրոների և աշխատավորների դեպու-
տատների քաղաքային ու շրջանային սովետների գործկոմների նիստերում:
Անհրաժեշտ է քաղաքների, ավանների, շրջանային կենտրոնների շինարարա-
կան նախագծերում նախատեսել «Երջանկության պալատների» կառուցում, այդ
նպատակով ավելի ակտիվորեն օգտագործել կուլտուրայի տները, սահմանել
ծննդի գրանցման, անձնագրի հանձնման, պսակադրման, մարդկանց կյանքում
տեղի ունեցող մյուս կարևոր իրադարձությունների պաշտոնական-հանդիսա-
յին մաս և դրա անցկացման կարգ:

Կրոնական վերապրուկների դեմ մղվող պայքարում անթույլատրելի են
թե՛ պասսիվությունը, թե՛ վարչարարության փորձերը: Միևնույն ժամանակ
անհրաժեշտ է ուժեղացնել վերահսկողությունը կրոնական պաշտամունքների
վերաբերյալ օրենսդրության պահպանման նկատմամբ, վճռականապես խա-
փանել հոգևորականության, առանձին խմբերի ու հավատացյալների անօրի-
նական գործունեությունը:

Ակտիվ աթեիստական դիրքորոշման հաստատուն ձևավորումը աշխատան-
քային կոլեկտիվներում, մեզ համար խորթ գաղափարախոսության նկատմամբ
անհաշտության ոգով դաստիարակումը եղել և մնում են կուսակցական, սո-
վետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, մեր
ողջ հասարակության կարևորագույն խնդիրներից մեկը:

# ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

## Վ. Մ. ԿԱՍՊԱՐՈՎԻ ՆԱՄԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԵՎ Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱՅԻ ՀԵՏ

(1913—1914 թթ.)

*ՎԼԱԴԻՄԻՐ ԻԼՅԻՉ ԼԵՆԻՆԻ ԵՐԿԵՐԻ լիակատար ժողովածուում զետեղված են նրա մի շարք նամակները Վ. Մ. Կասպարովին։ Վերջինիս անունը հատորներում պարունակված նյութերում հիշատակվում են նաև այլ առիթներով։*

*Վլադիսլավ Մինասի Կասպարյանց-Կասպարովը բոլշևիկյան կուսակցության ականավոր գործիչ էր։ Ծնվել է Շուշիում, 1884 թ., որտեղ և 1903 թ. ընդունվել է կուսակցության շարքերը։ Եղել է ՌՍԴԲԿ Բաքվի և Պետերբուրգի բոլշևիկյան կոմիտեների անդամ, քանիցս ձերբակալվել և արտաքսվել է։ 1912 թ. ամռանն ու աշնանը ղեկավար դեր է կատարել Դոնի բոլշևիկյան կազմակերպության վերականգնման և ՌՍԴԲԿ Դոնի կոմիտեի ստեղծման գործում։ Հանդես է եկել Կովկասի բոլշևիկյան մամուլի էջերում, աշխատակցել «Պրավդա»-ին։ 1913 թ. հունվարին տարագրվել է Բեռլին, որտեղից 1914 թ., պատերազմն սկսվելուց անմիջապես հետո, տեղափոխվել է Շվեյցարիա, բնակություն հաստատել սկզբում Բեռնում, ապա՝ Դավոսում, որտեղ և վախճանվել է 1917 թ. սեպտեմբերին։*

*Գալով Բեռլին՝ Կասպարովը նամակագրական կապ է հաստատում Կրակովում, իսկ ամռանը՝ Պորոնինում գտնվող Վ. Ի. Լենինի և Ն. Կ. Կրուպսկայայի հետ։ Ստանալով Ստ. Շահումյանի՝ վստահություն ներշնչող կարծիքը Վ. Մ. Կասպարովի մասին, Վ. Ի. Լենինը նրան անմիջապես ներգրավում է աշխատանքում, տալով կուսակցական կարևոր հանձնարարություններ։ Կասպարովը դառնում է Վ. Ի. Լենինի անձնվեր զինակիցներից մեկը և խոշոր դեր խաղում բոլշևիկների արտասահմանյան կազմակերպության գործունեության մեջ։*

*Կասպարովին Վ. Ի. Լենինի գրած նամակներում շոշափված հարցերի, ինչպես և Կասպարովի բեռլինյան շրջանի գործունեության առանձին կողմերի բացահայտման կարևոր միջոց են նրա պատասխան նամակները Լենինին և Կրուպսկայային։ Սույն հրապարակման մեջ լուսաբանվում են այդ նյութերից մի քանիսը։ Դրանց մեծ մասն անցյալում ամբողջական ձևով հրապարակված չի եղել, իսկ առանձին նամակներ լույս են տեսել միայն ռուսերեն։*

### I

### ՊԱՏԱՍԽԱՆ ՆԱՄԱԿՆԵՐ Վ. Ի. ԼԵՆԻՆԻՆ

*1914 թվականի փետրվարին Վ. Ի. Լենինը Կրակովից գրում է Բեռլին՝ Վ. Մ. Կասպարովին և զարմանք հայտնում, որ նա դեռ չի պատասխանել Կրուպսկայայի նամակին։ Վերջինս գրել էր, որ ընդհատվել է Գերմանիայի սոցիալ-դեմոկրատական կուսակցության կենտրոնական օրգանի՝* „Vorwärts"*-ի առաքումը իրենց և խնդրել, որ Կասպարովը Բեռլինում պարզի, թե ինչ է պատահել (տե՛ս* В. И. Ленин, ПСС, т. 48, стр. 261—262)*։*



*Ն. Կ. Կրուպսկայան այս մասին Վ. Մ. Կասպարովին գրել էր 1914 թ. փետրվարի 11-ին*։ Սկզբում շոշափել էր նշված հարցը, ապա անդրադարձել այլ խնդիրների։ Ստորև բերում ենք լրիվ նամակը.*

«11/II

Թանկագին ընկեր,

մի մեծ խնդրանք ունենք Ձեզ: Ձե՞ք կարող արդյոք մտնել „Vorwärts"-ի
խմբագրություն (ավելի ճիշտ՝ գրասենյակ) և հարցնել, թե ինչու են դադա-
րեցրել մեր հրատարակությունների փոխարեն մեզ ուղարկվող համարի առա-
քումը: Առաջ միշտ ուղարկում էին: Այս տարի հունվարին մենք դեռ ստանում
էինք, իսկ փետրվարից այլևս չենք ստանում: Պարզեցեք, խնդրեմ, հարցը:
Եթե հասցեն շփոթել են, ուղարկում եմ մեր տպագիր հասցեն:

Հուսով եմ, Դուք արդեն վաղուց ստացել եք Դիսկուսիոն թերթիկը և
Կ. Օ.-ի** № 32-ը: Նամակն ստանալուն պես Ձեր հասցեն տվեցի առաքման
բաժնի աշխատակցուհուն:

Թե ո՞վ է Ա. Տ.-ն, ինքներս էլ չգիտենք:

Ոչ մի ռեֆերենտի չենք ճանաչում: Այդ մասին գրեցեք Ա.Կ.Կ.***
(M<sub></sub>r Kousnezoff, 102, rue Bobillot, Paris XIII):

Մարքսիստական գրականության և այլնի առաքման մասին նույնպես
կապվեցեք Ա. Կ. Կ.-ի հետ: Այժմ մենք ոչ մի պաշար չունենք, մեր հրատարա-
կություններից միայն մեկական օրինակ կա, այն էլ ոչ բոլորից:

Դե, լավագույն ցանկություններս:

Ողջույն Սյոմային****:

Ինչպե՞ս է նա հայտնվել Բեռլինում:

Ն. Կ.»[1]:

*Ինչո՞ւ պետք է Վ. Մ. Կասպարովը ձգձգեր պատասխանը։ Չէ՞ որ նա ճշտապահ էր, մեծ պատրաստակամությամբ կատարում էր Վ. Ի. Լենինի հանձնարարությունները։ Այդ հարցին պատասխանում է Վ. Ի. Լենինին Կասպարովի գրած նամակը.*

«4/3—1914 թ.

Մեծարգո Վլադիմիր Իլյիչ: Ի սեր աստծո, ներեցեք հանձնարարու-
թյունը անհշտապահ կատարելու համար: Ամբողջ բանն այն է, որ առաջ
զբաղված էի ուսանողական կազմակերպությունների կոնֆերանսում (որտեղ,
ի միջի այլոց, հանդիպեցի լայպցիգցի ընկերոջը), իսկ հետո եղավ Լունա-
չարսկու հետ, հավանաբար, Ձեզ արդեն ծանոթ պատմությունը, ըստ որում
մեր մարդկանց կարող էր ամեն տեսակ փորձանք պատահել:

Ես տեղեկացա փոստատանը, այնտեղ ինձ ասացին, որ կանոնավոր կեր-
պով ուղարկում են Ձեզ գրականությունը և, եթե այն չի ստացվում, նշանա-
կում է՝ բռնագրավում են:

Լունաչարսկու պատմությունից հետո ես շատ ուրախ եմ, որ մենք Ձեր
ռեֆերատը չկազմակերպեցինք, թեև շատ ցանկալի էր:

---

* *Բոլոր տարեթվերը նշվում են նոր տոմարով։*

** *Կենտրոնական օրգան։*

*** *ՌՍԴԲԿ արտասահմանյան կազմակերպության կոմիտե։ Ստեղծվել է 1911 թ. դեկտեմբերին Փարիզում կայացած ՌՍԴԲԿ արտասահմանյան խմբերի խորհրդակցությունում։ Հետագայում ընտրվել է 1915 թ. փետրվարի 15-ից մարտի 4-ը Բեռնում կայացած ՌՍԴԲԿ արտասահմանյան խմբերի կոնֆերանսում, որտեղ Ա. Կ. Կ.-ի կազմում անցել են Ն. Կ. Կրուպսկայան, Ի. Ֆ. Արմանդը, Գ. Լ. Շկլովսկին, Վ. Մ. Կասպարովը։*

**** *Սյոմա՝ Սեմկով Ս. Մ. (1885—1928), 1903 թ. բոլշևիկյան կուսակցության անդամ։ Առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ վտարանդի էր։ Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո կատարել է ռազմատնտեսական և արհմիութենական աշխատանքներ, կուսակցության XIV և XV համագումարներում ընտրվել է ԿՎՀ կազմում։*

1. *ՍՄԿԿ ԿԿ-ին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի կենտրոնական կուսակցական արխիվ, ֆ. 17, ց. 1, գ. 27030, թ. 1։*

մըտել, բայց ինքը, տեսնելով, որ գործը վատանում է, պետք է ավելի ակտիվ միջամտեր:

Անիա առայժմ բոլորը:

Ողջույն

Սլավա»[1]:

## II

## Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱՅԻ ՆԱՄԱԿՆԵՐԸ Վ. Մ. ԿԱՍՊԱՐՈՎԻՆ

*Վլադիմիր Իլյիչի և Վ. Մ. Կասպարովի նամակագրության, Կասպարովի կողմից Իլյիչի հանձնարարությունների կատարման մի շարք արժեքավոր տարրեր են բացահայտվում մասնավորապես Ն. Կ. Կրուպսկայայի, մյուս լենինյանների հետ Կասպարովի նամակագրության մեջ: Այդ մասին են վկայում Ն. Կ. Կրուպսկայայի ստորև բերվող նամակները՝ ուղղված Վ. Մ. Կասպարովին:*

«10/VI [1913 թ.]

Հարգելի ընկեր,

ստացանք Ձեր նամակը: Max. Wiene-ը մեկնում է, այժմ գրեցեք մեր անձնական հասցեով, Herrn W. Ulijanow, Poronin (Galicien):

Մեր մարդկանց մասին. Բեռլինում շատ վատ է: Ձմռանն այնտեղ մի փոքրիկ խմբակ կար, բայց այժմ ողջ հասարակությունը մեկնել է տարբեր կողմեր: Դրա փոխարեն Բեռլինում քիչ չեն լիկվիդատորները: Չգիտեմ, հիմա այնտեղ բ[ոլշևիկ]ներից մարդ կա՞, թե ոչ:

Ուղարկում եմ Ձեզ լատիշ բ[ոլշևիկ] ընկերների հասցեն: Նրանք **շատ** լավ մարդիկ են: Նրանք Ձեզ ամեն ինչ կասեն և կպատմեն:

Herrmann*, Albrechtstrasse 11, Gross lichterfelde bei Berlin.

Ասացեք, որ հասցեն մեզնից եք ստացել:

Ապա, Բեռլինում ապրում է Տիմոֆեյի** մի լավ ծանոթը: Նա սոցիալ-դեմոկրատուհի չէ, բայց օգնել է մերոնց համերգներ կազմակերպելու, և առհասարակ մերոնք նրա մոտ եղել են: Frau a. Wosky Ter-Ohanessian.*** Wilhelmstrasse 2, portal I, Friedenau bei Berlin.

Վկայակոչեք Վլադ. Իլյիչին:

Եթե Դուք գերմաներենը լավ գիտեք և ուզում եք կապվել գերմանացիների հետ, մենք կարող ենք նրանց հետ կապեր գտնել:

Լավ կլիներ, եթե Ձեզ հաջողվեր համախմբել Բեռլինի բ[ոլշևիկ] ընկերներին:

Ռոստովի և Բաքվի հետ կապեր չունե՞ք: Ապրիլից առաջ մենք լավ կապված էինք Բաքվի հետ, բայց մեզ հետ կապված մարդիկ ձախողվեցին և հիմա չգիտենք, թե ինչ է կատարվում այնտեղ:

Ամուսինս խնդրում է հայտնել, որ ինքը հաճույքով կնայի Ձեր բրոշյուրը: Միայն լավ կլինի այն հիմա ուղարկեք, թե չէ ամուսինս գուցե մի երկու շաբաթով մեկնի:

Դո՞ւք չեք երբեմն «Պրավդա»-ում գրում Սլավին**** անունով:

---

** Գերման Ի. Է. (1884—1942)— պրոֆեսիոնալ հեղափոխական, ՌՍԴԲԿ անդամ 1904 թվականից: Աշխատել է ՌՍԴԲԿ Ռիգայի բոլշևիկյան կազմակերպությունում: 1909 թ. տարագրվել է Բեռլին: Եղել է Լատիշական երկրամասի սոցիալ-դեմոկրատիայի (ԼՍԴ) բոլշևիկյան խմբերի կազմակերպիչներից մեկը արտասահմանում:*

*** Տիմոֆեյ— բոլշևիկյան կուսակցության ականավոր գործիչ Սուրեն Սպանդարի Սպանդարյան (1882—1916):*

**** Տեր-Հովհաննիսյան Ռ. Ա.— հայ ականավոր գրող Մուրացանի կինը: 1890-ից գտնվել է Գերմանիայում: 1912 թ. սկզբին Ս. Սպանդարյանի միջոցով ծանոթացել է Վ. Ի. Լենինի հետ և նրա հանձնարարությամբ կապ է պահպանել Կովկասում գործող բոլշևիկների հետ:*

***** Սլավին ստորագրությամբ Վ. Մ. Կասպարովը հոդվածներ էր տպագրում «Պրավդա»-ում:*

[1]. *ՍՄԿԿ ԿԿ-ին կից ՄԼԻ-ի ԿԿԱ, ֆ. 2, ց. 5, գ. 457 (տե՛ս նաև* «Исторический архив», *№ 4, 1959 թ., էջ 36—37):*



Առայժմ ընդունեք լավագույն ցանկությունները: Շնորհակալություն Աբելի* և Շահումյանի հասցեների համար:

Ն. Կ[րուպսկայա]»[1]:

*Նամակում շոշափված հարցերը կարելի է պայմանականորեն բաժանել երկու խմբի. 1) հանձնարարություններ, 2) Վ. Մ. Կասպարովի բրոշյուրի (հոդվածի) տպագրմանն օժանդակելու հարցը:*

*Ի՞նչ բրոշյուրի կամ հոդվածի մասին է խոսքը:*

*Վլադիսլավ Կասպարովն զբաղվում էր ազգային հարցի մարքսիստական տեսության ուսումնասիրմամբ, որին Վ. Ի. Լենինը կարևոր նշանակություն էր տալիս այդ ժամանակ: Կասպարովը գրել էր մի հոդված (գրքույկ), բայց չէր համարձակվել միանգամից ուղարկել որևէ օրգանի, այլ ցանկացել էր նախ իմանալ Լենինի կարծիքը: Ուստի, սկզբում նա գրում է Ն. Կ. Կրուպսկայային, իմանալու՝ ժամանակ կունենա՞ արդյոք Վլադիմիր Իլյիչը կարդալու իր հոդվածը (գրքույկը): Հենց դրան էլ վերաբերում են Նադեժդա Կոնստանտինովնայի «Ամուսինս խնդրում է հայտնել, որ հաճույքով կնայի Ձեր բրոշյուրը» խոսքերը:*

*Կասպարովն անմիջապես ուղարկում է իր ձեռագիրը, որը Ուլյանովներն ստանում են 1913-ի հունիսի 14-ին: Նույն օրը Ն. Կ. Կրուպսկայան գրում է Կասպարովին.*

«14.VI [1913 թ.]

Հարգելի ընկե՛ր

այսօր ստացանք Ձեր նամակն ու հոդվածը: Ամուսինս դեռ չի հասցրել հոդվածը կարդալ. հենց որ կարդա, կգրի:

Ռոստով և Բաքու արդեն գրել եմ: Կապեցեք մեզ նաև Պոլտավայի ընկերների հետ:

Գրականություն նրանց կարելի է ուղարկել ծրարներով՝ ներողություն արտահայտող երկտողերով հանդերձ: Եթե ուզում եք, կարող ենք ուղարկել ինքներս, և Դուք կուղարկեք միայն հասցեները, կամ թե՝ ուղարկեք Դուք, իսկ մենք Ձեզ կուղարկենք անհրաժեշտ գրականությունը»[2]:

*Մի քանի օր անց, Պորոնինից Բեռլին՝ Կասպարովին Վ. Ի. Լենինը գրում է այն պատասխան նամակը, որը զետեղված է Երկերի լիակատար ժողովածուի 48-րդ հատորի 197 էջում:*

«Թանկագին ընկեր, ստացել և կարդացել եմ Ձեր հոդվածը: Թեման, ըստ իս, լավ է ընտրված և ճիշտ է մշակված, բայց գրական շարադրանքն անբավարար է: Կա չափից ավելի, ինչպես այդ ասեմ, «ագիտացիա», որը հարմար չէ **տեսական** հարցին նվիրված հոդվածին: Ըստ իս, կա՛մ Դուք ինքներդ պետք է վերամշակեք, կա՛մ մենք կփորձենք»:

*Ցանկանալով, որ հոդվածը գրական առումով ավելի հղկված ու մշակված լինի, Վ. Ի. Լենինը խորհուրդ է տալիս Վ. Կասպարովին՝ աշխատել Բեռլինի ռուսական սոցիալ-դեմոկրատական արխիվում:*

*Իլյիչը միաժամանակ Կասպարովին տվել է մի շարք այլ հանձնարարություններ, որոնք վերաբերում էին Ռուսաստանի բոլշևիկյան կազմակերպությունների հասցեների հայթայթմանը և նրանց արտասահմանից գրականություն ուղարկելուն: Կասպարովը լայն կապեր ուներ Կովկասի, Դոնի-Ռոստովի և Պետերբուրգի բոլշևիկյան կազմակերպությունների, դրանց ականավոր գործիչների հետ: Նա օգնում էր Լենինին՝ գտնելու նրանց հասցեները, նամակագրություն և կապ հաստատելու նրանց հետ: Վ. Մ. Կասպարովը մասնակցում էր արտասահմանից Ռուսաստանի բոլշևիկյան կազմակերպություններին գրականություն և անհրաժեշտ այլ նյութեր առաքելուն:*

---

** Ենուկիձե Ա. Ս. (1877—1937)— ՌՍԴԲԿ անդամ 1898 թ., բոլշևիկ:*

[1] *ՍՄԿԿ ԿԿ-ին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի կենտրոնական կուսակցական արխիվ, ֆ. 17, ց. 7, գ. 27004, թ. 1—2:*

[2] *ՍՄԿԿ ԿԿ-ին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի կենտրոնական կուսակցական արխիվ, ֆ. 17, ց. 7, գ. 27005, թ. 1:*

*Բեռլինի բոլշևիկյան խմբի քարտուղարն էր Կասպարովը և եռանդուն աշխատանք էր ծավալում Բեռլինի ու Գերմանիայի այլ վայրերի ուսանողական կազմակերպություններում: Նա աշխատում էր համախմբել արտասահմանում գործող բոլշևիկներին, պայքարում էր ուսանողության շրջանում բուրժուական կուսակցությունների և օպորտունիստական զանազան հոսանքների ազդեցության տարածման դեմ:*

*Ստորև բերվում են Կրակովից ու Պորոնինից Բեռլին՝ Կասպարովին Ն. Կ. Կրուպսկայայի գրած մի քանի նամակները, որոնցում հարուստ և չափազանց կարևոր տեղեկություններ կան ոչ միայն Կասպարովի, այլև բոլշևիկների արտասահմանյան կազմակերպության գործունեության վերաբերյալ: Այդ նամակները ևս արտացոլում են Լենինի վիթխարի աշխատանքը բանվորական շարժման նոր վերելքի և առաջին համաշխարհային պատերազմին նախորդած ժամանակաշրջանում բոլշևիկյան կուսակցության գործունեությունը ղեկավարելու, նրա ստրատեգիան ու տակտիկան մշակելու, II Ինտերնացիոնալի խոռացող օպորտունիզմը մերկացնելու և միջազգային հեղափոխական ուժերին մարքսիզմի դրոշի ներքո համախմբելու բնագավառներում:*

«7/XI [1913 թ.]

Թանկագին ընկեր,

մոտ մի ամիս անց եմ պատասխանում Ձեր նամակին: Մեծահոգաբար ներեցեք: Սարսափելի զբաղված էի:

Մենք կրկին տեղափոխվել ենք Կրակով:

Մեր այժմյան հասցեն է. W. Ulijanow, Ulica Lubomirskiego 51, Krakov.

Շնորհակալություն արխիվում կատարած որոնումների համար, «ոչ-ին դատ չկա»:

«Նիկոյի» մասին ոչինչ չգիտենք: Ժնևում ոմն Նիկո կար, որին, հավանաբար, Դուք նկատի ունեք, բայց նա, իհարկե, չէր մեկնի որպես ԿԿ-ի գործակալ: Պլեխանովականները ինչ-որ անլեգալ թերթ են ձեռնարկում, գուցե խոսքը դրա մասին է: Բայց, կրկնում եմ, այն, ինչի մասին Դուք գրում եք, ոչինչ չգիտեմ:

Եղել է, ինչպես Դուք գիտեք, ճիշտ է՝ արդեն թերթերից, ԿԿ-ի 2-րդ խորհրդակցությունը* կուսակցական աշխատողների հետ: Այն իր կազմով շատ պատկառազդու էր: Զեկուցումները տեղերից տվեցին վառ պատկերը այն բանի, ինչ կատարվում է այժմ Ռուսիայում:

Բանաձևերը տպագրվում են, հեկտոգրաֆով տպագրվածներն ուղարկել ենք Ռուսաստան, մի օրինակ լատիշների համար ուղարկել ենք Գերմանին, կարդալու համար վերցրեք նրանցից:

Պիտերից ոգեշունչ նամակներ ենք ստանում, այնտեղ ամեն ինչ եռում է. խոսում են համընդհանուր գործադուլի մասին: Լիկվիդատորներն այնտեղ խիստ վարկաբեկված են և քայլում են գլխիկոր:

Մոսկվայում ևս խառնաշփոթ է:

Ի՞նչ են գրում Ձեզ Պոլտավայից և Ռոստովից: Ռոստովի ընկերները որևէ բան գիտե՞ն արդյոք Տուլյակովի** զեկուցման մասին:

Ինչպե՞ս է Աբելի առողջությունը: Կազդուրվե՞լ է:

Իսկ ի՞նչ է կատարվում Ձեզ մոտ՝ Բեռլինում: Հորիզոնում նոր բոլշևիկներ չե՞ն երևացել արդյոք:

Դե՛, վերջացնում եմ:

Ամուր սեղմում եմ Ձեր ձեռքը:

Ն. Կ[րուպսկայա]»[1]:

* *Նկատի է առնվում 1913-ի հոկտեմբերին Պորոնինում կայացած ՌՍԴԲԿ ԿԿ-ի խորհրդակցությունը կուսակցական աշխատողների հետ, ուր Վ. Ի. Լենինը հանդես եկավ ազգային հարցի մասին ծավալուն զեկուցմամբ:*

** *Տուլյակով Ի. Ն.— բանվոր, սոցիալ-դեմոկրատ, մենշևիկ, IV պետական դումայի դեպուտատ՝ Դոնի մարզից:*

*1 ՍՄԿԿ ԿԿ-ին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի կենտրոնական կուսակցական արխիվ, ֆ. 17, ց. 7, գ. 27000, թ. 1—2:*



«23/IV [1914 թ.]

Թ[անկագին] ը[նկեր]: Ինչո՞ւ իմ նամակին ոչինչ չեք պատասխանում: Ձե՞ք ստացել այն: Ես շատ էի խնդրել. 1) անհապաղ տալ Ծ[ահումյան]-ի հասցեն, 2) հաստատել Աբելի հասցեն կամ տալ նրա նոր հասցեն: Եթե ունեք կովկասյան այլ կապեր, ուղարկեք և դրանք՝ հասցեատերերի բնութագրմամբ: Եթե Կովկասի մասին որևէ տեղեկություն ունեք, հայտնեք մեզ: Այդ ամենը շատ շտապ: Արդյոք դեռ ո՞ղջ են Պոլտավայի ընկերները: Պիտանի՞ է արդյոք հին հասցեն: Եթե ոչ, տվեք նորը:

Միք ծուլանա, գրեք, շատ է պետք:

Ընկերական ողջույնով՝ Ն. Կ[րուպսկայա]»[1]:

«3/VI [1914 թ.]

Թանկագին ընկեր:

Ստացե՞լ եք արդյոք բլանկը: Ձեր նամակն ստանալուն պես գրեցի Փարիզ (մեզ մոտ ոչինչ չկա)՝ պահանջվածն ուղարկելու խնդրանքով: Բայց առայժմ ոչ մի պատասխան չեմ ստացել, այլ միայն նամակիս պատասխանելու խոստում... Այդպես էլ չգիտեմ՝ որևէ բան արվա՞ծ է, թե ոչ:

Ստացե՞լ եք արդյոք Ստեփանի* հասցեն: Ես նրան գրել եմ Ձեր նշած հասցեով, բայց դեռ ոչ մի պատասխան չկա: Ունե՞ք արդյոք Կովկաս մեկնած Պոլտավայի ընկերոջ** հասցեն: Ի՞նչ է գրում Աբելը:

Ինչո՞ւ եք Դուք սկսել այդպես սակավ գրել:

Հղում ենք ողջույններ:

Ն. Կ[րուպսկայա]:

Հա՛, մենք արդեն գյուղում ենք ապրում:

Մեր հասցեն է. Ulijanow. Poronin (Galicien) Oesterreich:

Ո՞ղջ է Գուրևը: Որևէ բան չգիտե՞ք արդյոք հին գայլի մասին»[2]:

«22/VI [1914 թ.]

Թանկագին ը[նկեր]: Ձայն հանեք: Ինչո՞ւ ոչինչ չեք գրում: Ծ-ն*** դեռ վաղուց գրել է, թե հայտնել է Ձեզ, որ նամակս չի կարողացել կարդալ, և որ դա արդեն վաղուց է եղել: Գուցե Դուք արդեն մեկնե՞լ եք Բեռլինից, կամ շա՞տ եք զբաղված: Իսկ ի՞նչ եղավ Պոլտավայում եղած ընկերոջ հասցեն: Որտե՞ղ է նա հիմա: Ի՞նչ են գրում Ձեզ Կովկասից: Որտե՞ղ է Սյոման: Ի՞նչ է կատարվում Ձեզ մոտ՝ Բեռլինում:

Այժմ մեր հասցեն է՝ Herr Ulijanow. Poronin (Galicien) Oesterreich:

Պատասխանեք, խնդրեմ:

Ն. Կ[րուպսկայա]»[3]:

## III

## Վ. Մ. ԿԱՍՊԱՐՈՎԻ ՊԱՏԱՍԽԱՆ ՆԱՄԱԿՆԵՐԸ Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱՅԻՆ

«24/IV 1914 թ.

Մեծարգո Նադեժդա Կոնստանտինովնա:

* *Ստ. Շահումյանի:*

** *«Պոլտավայի ընկերը» բոլշևիկ Ակակիա Վիսարիոնովիչ Կոբախիձեն է, որը 1912 թ. Կովկասից արտաքսվել է Դոնի-Ռոստով, իսկ այնտեղից 1913 թ.՝ Պոլտավա: Հետագայում նա վերադառնում է Կովկաս, Քութաիսի նահանգի Ռաչինի շրջանի Ամբրոլաուրի գյուղը: Վ. Մ. Կասպարովը նրա հետ համագործակցել է Դոնի բոլշևիկյան կազմակերպությունը վերականգնելու աշխատանքում:*

*** *Շահումյանը:*

*1 ՍՄԿԿ ԿԿ-ին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի կենտրոնական կուսակցական արխիվ, ֆ. 17, ց. 5, գ. 27027, թ. 1:*

*2 Նույն տեղը, ֆ. 17, ց. 5, գ. 27003, թ 1:*

*3 Նույն տեղը, ֆ. 17, ց. 5, գ. 27006, թ. 1:*

Նոր ստացա Ձեր երկրորդ նամակը: Առաջին նամակին անմիջապես չեմ պատասխանել ոչ թե ծուլանալու, այլ այն պատճառով, որ պետք է ստանայի և Ձեզ հայտնեի Իտալիա մեկնած ընկերոջ հասցեն: Նրա հասցեն ինձ պետք է հայտներ նրա եղբայրը, որը մեր խմբից էր, և ուշացվեց:

Ուստի, առայժմ պատասխանում եմ Ձեր մյուս հարցերին:

Ծ[ախումյանից] ստացել եմ միայն մի հեռագիր, նրա հասցեն այժմ չգիտեմ, հարցում եմ արել: Իսկ առայժմ, եթե շատ շտապ է, գրեցեք այս հասցեով. Բաքու, Պիտոևի գրասենյակ, Միքայել Ալեքսանդրի Ղարագյոզովին, Ստեփանի համար: Վերջերս նամակ եմ ստացել կնոջիցս, հայտնում է, որ Ծ[ախումյանը] արդեն մի ժողով է գումարել, որտեղ որոշվել է հրատարակել և՛ ռուսերեն, և՛ հայերեն թերթեր:

Կովկասի վերաբերյալ տեղեկությունները շատ քիչ են, միայն Աքելն է միառժամանակ առաջ գրել, արդարացնելով այնտեղի բոլշևիկների տակտիկան, որ այս վերջիններս ատիճանաբար ավելի մեծ հեղինակություն են ձեռք բերում, և որ բանվորների մեջ լիկվիդատորներ չկան: Աքելի նոր հասցեն է՝ Ծլիսելբուրգյան սյող. Մուրավյովի նրբանցքի անկյուն, 2/17, բնակ. 28:

Հին հասցեով ուղարկած իմ մի նամակն ընկել է ժանդարմատուն: Աքելին կանչել են և հարցրել, թե ո՞վ է նամակի հեղինակը, ո՞վ է Իլյիչը, կուսակցական ի՞նչ բարեկամների մասին է խոսվում նամակում և այլն: Նա պատասխանել է միայն առաջին հարցին, իսկ մնացածներին հրաժարվել է պատասխանել:

Թերթերից իմացել եմ, որ ռոստովցի բոլոր ծանոթներս մեկնել են Նարիմյան երկրամաս*, կաշխատեմ այնտեղ (Ռոստովում—Հ. Կ.) նոր ծանոթներ ձեռք բերել:

Անսպասելիորեն Կովկասից նամակ ստացա մեր պոլտավյան թղթակցից**, նրա արտաքսման ժամկետն արդեն լրացել է: Բայց Պոլտավայի հասցեի մասին նա ոչինչ չի գրում, ուստի, պետք է սպասել իմ հարցմանը պատասխանող նրա նամակին:

Իտալիա մեկնածներից մեկը, մի շատ եռանդուն, բայց Բոգդանովի*** նկատմամբ փոքր-ինչ անձնական համակրանք տածող երիտասարդ է: Մենք այստեղ հաջողությամբ ազատեցինք նրան այդ համակրանքից: Նրա հասցեն կուղարկեմ հաջորդ նամակում:

Այժմ մեր խմբի մեջ, ինձնից ու Սյոմայից բացի, մտնում են Իտալիա մեկնած ընկերոջ եղ[բայր]ը և մի կուստրոմցի, որը վերջերս է թողել բավական հեռավոր տեղերը****:

Հիմա Ձեզ մի խնդրանք ունենք. չէի՞ք աջակցի մեզ՝ «Պրոսվեշչենիե»-ն***** ավելի կանոնավոր ստանալու: Բանն այն է, որ մենք այն չենք ստանում, քանի դեռ փող չենք ուղարկում, իսկ դա ուշացնում է, և մենք այդ պատճառով բոլորովին չենք ստացել և, նշանակում է, չենք տարածել № 2-ը:

Այ, եթե մեզ ուղարկեին առանց փողը նախապես ստանալու, մենք այդ գործն ավելի լավ կկազմակերպեինք և, հուսով եմ, որ օրինակների թիվը կհասցնեինք 20—25-ի: Հաճախ մենք ապառիկ վաճառում և դրամը ստանում ենք հետո: Ահա շուտով լույս կտեսնի № 4-ը, իսկ փողը դեռ չենք հավաքել (թեև ոչ մի պֆենինգ չի կորչում) և, հավանաբար, կմնանք առանց այդ համարի: Իսկ, մինչդեռ, մեր ամեն մի գնորդ (մեծ մասը ուսանողներ) ուզում է ունենալ լրիվ հավաքածուն:

* Այսինքն՝ աքսորվել են Սիբիր:

** Ս. Վ. Կորախինից:

*** Բոգդանով Ա. Ա. (1873—1928)— սոցիալ-դեմոկրատ, փիլիսոփա, սոցիոլոգ, տնտեսագետ, մասնագիտությամբ բժիշկ: ՌՍԴԲԿ II համագումարից հետո հարում է բոլշևիկներին: Ռեակցիայի և հեղափոխական նոր վերելքի տարիներին գլխավորում է օտզովիստներին, դառնում «Վպերյոդ» հակակուսակցական խմբի պարագլուխը: Փիլիսոփայության հարցերում փորձում էր ստեղծել իր սեփական սիստեմը՝ «էմպիրիոմոնիզմը», որի սուր քննադատությամբ հանդես եկավ Վ. Ի. Լենինը իր «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» աշխատության մեջ:

**** Այսինքն՝ վերադարձել է սիբիրյան աքսորից:

***** Բոլշևիկյան տեսական ամսագիր, լույս է տեսել Պետերբուրգում, 1911 թ. դեկտեմբերից:



Եթե կարող եք, այնպես արեք, որ ուղարկեն առանց նախապես փողն ստանալու: Մի պատվիրատու էլ ունենք նույնիսկ այլ քաղաքում (Ֆրեյբուրգում):

Սկզբում կարելի է (№ 4-ը) ուղարկել իմ հասցեով: Թող ուղարկեն մի 15 օրինակ:

Ահա առայժմ բոլորը:

Ընկ[երական] ողջույնով՝

Սլավա»[1]:

„Köthen, 18/VI 1914 թ.

Հարգ[ելի] Ն[ադեժդա] Կ[ոնստանտինով]նա:

Գրում եմ Ձեզ մի փոքրիկ քաղաքից, ուր ընկել եմ ուսանողական գործե-
րով (մենք նախապատրաստվում ենք համա[ուսանողական] կոնֆերանսի):
Այստեղ մի լավ ընկ[երոջ]ից բոլորովին պատահմամբ իմացա, որ անչափ
պետք է արտասահ[մանյան] անձնագրի մի մաքուր բլանկ: Այդ ընկ[երը]
մեզ շատ պետք է, պետք կգա նաև ապագայում, ուստի, ես կուզենայի անհապաղ կատարել նրա խնդրանքը: Ձեզ հանձնարարելով այդ գործով դիմել
Փարիզ Ձեր նշած հասցեով:

Եթե կարողանաք մի բան անել, շատ լավ կլինի: Գրքույկի համար, որքան պետք լինի, կմուծվի:

Կրկին թախանձում եմ կատարել խնդրանքս:

Օգտվելով առիթից, հայտնում եմ Իտալիայում գտնվող ընկերոջ հասցեն:
Վերադառնալուց հետո կհայտնեմ ինչպես այդ, նույնպես և նախկին Պոլտ[ավայի] թղթակցի հասցեն:
Գրեցի այս տողերը և հասցեն չգտա—թողել եմ Բեռլինում:

Անձնագրային գրքույկը հարկավոր է հնարավորին չափ շուտ:

Բանվորական մամուլի օրը մենք «Պրավդա»-ի համար հավաքել ենք 70 մարկ: Մանրամասնությունները՝ հետո:

Առայժմ՝ լավագույն ցանկություններս:

Ընկ[երական] ողջույնով՝ Սլավա:

P. S. Եթե հաջողվի, խնդրածս գրքույկն ուղարկեք ուղիղ իմ հասցեով»[2]:

«24/VI [1914 թ.]

Մեծարգո Նադեժդա Կոնս[տանտինով]նա:

Իրոք այս ամբողջ ժամանակ ես շատ զբաղված եմ եղել, սկզբում Բեռնի
ուսանողական կոնֆերանսի նախընտրական ժողովներով և շրջագայությամբ
Գերմանիայում, ապա՝ բուն կոնֆերանսում և, վերջապես, կոնֆերանսից հետո՝ դարձյալ Գերմանիայում զեկուցումներով շրջագայելով: Իհարկե, այդ բոլորը արդարացում չի կարող լինել, և ես ինքս դժգոհ եմ այն բանից, որ այդպես գլխովին մխրճվել եմ ուսանողական գործերում: Բայց ուրիշ ի՞նչ կարելի
է անել այստեղ, այս անիծյալ Բեռլինում: Դուք հարցնում եք, թե ի՞նչ ենք
անում այստեղ: Դե, գրեթե ոչինչ: Տարածում ենք 15 օր[ինակ] «Պրոսվեշչենիե» (ստացա 4-րդ և 5-րդ համարները, 4-րդի համար արդեն փողն ուղարկել եմ, 5-րդի համար կուղարկեմ, հավանաբար, մոտ օրերս): Հույս ունենք՝
աշնանից ավելի շատ տարածել: Բանվորական մամուլի օրը ուսանողներից
«Պրավդա»-ի օգտին հավաքել ենք 50—60 մարկ և հավաքման համար թերթիկ ենք տվել լատիշ ընկերներին: Ահա և բոլորը: Ժողովներում երբեմն հանդիպում ենք լիկվիդատորների հետ, գզվռտվում:

Ի միջի այլոց, վերջերս Աքսելրոդը երեք զեկուցում կարդաց: Ասենք,
դրանք զեկուցումներ չէին, այլ դրանց ծաղրանկարը, այնպես որ կողքիս նստած կուսակցական գործերում անփորձ ուսանող-լիկվիդատորը շվարած

1. ՍՄԿԿ ԿԿ-ին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի կենտրոնական կուսակցական արխիվ, ֆ. 17, ց. 2, գ. 154:

2 Նույն տեղը, ֆ. 17, ց. 2, գ. 154:

հարցրեց ինձ՝ այս ի՞նչ մանկական թոթովանք է: Ես նրան հանգստացրի, նշելով, որ Աքսելրոդը «տակտիկայի փիլիսոփա» է և նրան թույլատրվում է մանկան պես թոթովել: «Տակտիկայի փիլիսոփային» ես առարկեցի, բայց, խոստովանում եմ, փոքր-ինչ զուսպ, այնուամենայնիվ ցավ հայտնեցի, որ Ռուսաստանում ս. դ.-ի հիմնադիրներից մեկի զեկուցման մեջ մարքսիզմը հիշեցնող ոչ մի բան չկար: Լիկվիդատորներն, իհարկե, ընդհատում էին ինձ ամեն խոսքում: Այդ զբաղմունքը դուր եկավ նաև «փիլիսոփային», և նա սկսեց խփել սեղանին և ընդհատել ինձ, ճչալով. «Պետք է համարձակություն ունենալ և բանվորներին ասել ճշմարտությունը» և այլն: Կարծես ես ասել էի, թե ինչ-որ բան պետք է թաքցնել: Մյուս մենշևիկներն առիթը բաց չթողին, որպեսզի իրենց «բացականչություններում» դիմեին էքսպրոպրիացիայի և այլն: Ճիշտն ասած, Աքսելրոդի ճչոցը փոքր-ինչ հանեց ինձ զուսպ վիճակից, և ես էլ իմ հերթին սկսեցի գոռալ նրա վրա:

Մի քանի խոսք Բեռնի ուսան[ողական] կոնֆ[երանսի] մասին: Մենք (երեք հոգի էինք՝ ես, լայպցիգցի ընկ[երը] և էլի մեկ ուրիշը, դարձյալ Գերմանիայից) և երկու պլեխանովականներ (այդ թվում Դնևիցկին*) լիկվիդատորների հետ մի ֆրակցիայի մեջ էինք, քանի որ պայքար էր մղվում նացիոնալիստների դեմ և սպասվում էր նաև՝ բունդականների դեմ: Հոսանքների միջև համաձայնության հիման վրա ֆրակցիայի կառուցման մասին իմ առաջարկը մերժվեց: Այդուհանդերձ, մենք մնացինք ընդհանուր ֆրակցիայում և որոշեցինք դրանից դուրս գալ միայն կոնֆերանսի օրակարգի այս կամ այն հարցի շուրջ լուրջ տարաձայնությունների դեպքում: Ցավոք սրտի, մի քանի հարցերի վերաբերյալ տարաձայնություններ կային հենց մեր (բոլշևիկներիս) միջև և, պետք է ասել, որ Բեռնի ընկ[երները] (Շկլովսկին** և ուրիշներ) ամբողջովին պաշտպանում էին իմ վարքագիծը: Ի միջի այլոց, ֆրակցիայի բյուրոյում մտանք ես, Դնևիցկին և մի լիկվիդատոր, այնպես որ, թեև ոչ ձևականորեն, անցավ համաձայնության սկզբունքը: Բունդականները (ոչ բոլորը) և մի քանի լիկվիդատորներ այնքան խայտառակ էին պահում իրենց, որ որպես «Կիևսկայա Միսլ»-ի թղթակից կոնֆ[երանսում] ներկա գտնվող Մարտինովը*** ստիպված եղավ կոնֆերանսի վերջին օրը բունդականների հետ միացյալ ժողովում հանդես գալ զեկուցմամբ և ջախջախել բունդականների սեպարատիզմը, որով և հարուցեց վերջիններիս զայրույթը: Ես ափսոսանք հայտնեցի, որ պպ. լիկվիդատորները միայն մասնավոր ժողովներում են հանդես գալիս Բունդի այդպիսի սուր քննադատությամբ, իսկ մամուլում լռում են: Համենայն դեպս, Մարտինովը մեզ մեծ բավականություն պատճառեց:

Այժմ պատասխանում եմ Ձեր մի քանի հարցումներին: Պոլտավայից Կովկաս մեկնած ընկ[երոջ] հասցեն չեմ հայտնել պարզապես այն պատճառով, որ ընկ[երը] կրկնակի արտաքսումից և ձերբակալումից հետո պետք է մի փոքր հանգստանար: Դուք ինձ կհասկանաք, եթե իմանաք, որ ժամանակին ես եմ նրան աշխատանքի ներգրավել:

Այժմ, հուսով եմ՝ նա հանգստացած կլինի: Հայտնում եմ նրա հասցեն. Ակակիա Վիսարիոնովիչ Կոբախիձեին՝ Քութաիսիի նահանգի Ռաչինի գավառի Ամբրոլաուրի ավան:

Ստեփանից միայն մի բացիկ եմ ստացել, որում նա Ձեր մասին ոչինչ չի գրում: Հավանաբար, ինձ գրած նրա մի այլ նամակը կորել է: Եթե նա Ձեզ չի հայտնել իր հասցեն, գրեցեք հետևյալ հասցեով.

* Դնևիցկի Պ. Ն. (Ցեդերբաում Ֆ. Օ.)—սոցիալ-դեմոկրատ, մենշևիկ, հրապարակախոս:

** Շկլովսկի Գ. Լ. (1875—1937)— ՌՍԴԲԿ անդամ 1898 թ.: Կուսաշխատանք է կատարել Բելոռուսիայում և արտասահմանում: 1909-ից քաղվտարանդի. վերադարձել է Ռուսաստան 1917-ի փետրվարյան հեղափոխությունից հետո: 1918—1925 թթ. կատարել է դիվանագիտական աշխատանքներ: Կուսակցության XIV համագումարում ընտրվել է ԿՎՀ-ի կազմում, որից հանվել է 1927-ին տրոցկիստական-զինովևյան օպոզիցիային մասնակցելու համար: 1931-ից աշխատել է միացյալ գիտատեխնիկական հրատարակչությունում:

*** Մարտինով Ա. (1865—1935)— «Էկոնոմիստների» պարագլուխներից մեկը, ականավոր մենշևիկ, ռեակցիայի և նոր հեղափոխական վերելքի տարիներին լիկվիդատոր:



Բաքու, Սպիտակ քաղաք, Շիբանի գրասենյակ, Ստեփան Գեորգիևիչ Շահումյանին:

Ուղարկում եմ Աբելի մի փոքր հնացած նամակը, թեև նա խնդրել է ոչընչացնել այն:

Ուղարկում եմ Իտալիա մեկնած ընկ[երոջ] նամակը. այնտեղ այժմ մեր երկու բեռլինցիներն են: Այդ երիտասարդը շատ լավն է ու նվիրված և, հնարավորության դեպքում, չէր խանգարի կատարել միջազգային սոցիալիստական կոնգրեսին* ներկա լինելու նրա խնդրանքը: Նամակում կա նաև նրա հասցեն: Ի միջի այլոց, ինքս նույնպես նման խնդրանք ունեմ, բայց այդ մասին չեմ գրել, որովհետև չգիտեմ՝ դրա համար ազատ կապիտալներ կունենա՞մ, թե ոչ:

Փարիզից բլանկ չեմ ստացել և շատ եմ ցավում, քանի որ **պետք էր** ընդառաջել ընկ[երոջը], որն ինձ այդ մասին խնդրել էր. հետո նա կարող է մեզ պետք գալ:

Սյոման հիմա ինչ-որ կուրորտում է, մենք այստեղ մնացել ենք 4 հոգի: Այո՛, ուզում էի խորհրդակցել Ձեզ հետ. մենք վաղուց ենք պահանջել, որ մեր ներկայացուցիչը դառնա վտարանդիական դրամարկղի անդամ, բայց լիկ[վիդատոր]ները ու բունդականներն արդեն 4 ամիս է ձգձգում են այդ հարցը, մինչդեռ այստեղ եղած ընդամենը երկու էսեռուհիներից մեկը դրամարկղի անդամ է, իսկ անցյալ տարի անդամ էր այստեղ եղած միակ բոլշևիկուհին: Այժմ արդեն այդ պարոնները, չգիտես ինչու, պոչ են խաղացնում, թեև մեր խմբում հինգ հոգի ենք: Ի՞նչ անել: Կարծում եմ՝ նրանք վախենում են (միանգամայն իրավացիորեն), որ մենք կխանգարենք իրենց՝ «տնավարի» վարելու դրամարկղի գործերը և դրամարկղի հետ վարվելու ինչպես խելքները փչի: Չէր խանգարի, որ ԿԿ-ի անունից մեզ պաշտոնական թուղթ տրվեր:

Առայժմ ահա բոլորը:

Ընկ[երական] ողջույնով՝

Սլավա»[1]:

**Նամակները թարգմանել, ծանոթագրել, հրապարակման է պատրաստել պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Հ. Ն. ԿԱՐԱՊԵՏՅԱՆԸ:**

* Խոսքը II Ինտերնացիոնալի Վիեննայում սպասվելիք կոնգրեսի մասին է, որը չկայացավ:

1. ՍՄԿԿ ԿԿ-ին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի կենտրոնական կուսակցական արխիվ, ֆ. 17, ց. 2, գ. 231, թթ. 1—3:

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՈՐԱԿԻ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ

**Լ. Ջ. ԱՆԱՆՅԱՆ**
Տնտեսագիտության թեկնածու

*ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԴԵԿՏԵՄԲԵՐՅԱՆ (1974 Թ.) ՊԼԵՆՈՒՄԸ կուսակցության և սովետական ժողովրդի ուշադրությունը հրավիրեց երկրի տնտեսական զարգացման առանցքային հարցերի վրա, խնդիր դրեց ավելի բարձրացնել հանրային արտադրության արդյունավետությունը, բարելավել որակական ցուցանիշները: Հարկ է հիշել, որ ՍՄԿԿ XXIV համագումարն արտադրանքի որակի բարելավումը համարեց արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր ազդակներից մեկը: «Ներկա պայմաններում,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— եթե նկատի ունենանք ամբողջ ժողովրդական տնտեսության համար ստացվող արդյունքը, ավելի լավը համարյա միշտ նշանակում է ավելի շատ»* (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, *էջ 78):*

*Այստեղից էլ տրամաբանական այն հետևությունը, որ արտադրանքի որակի բարձրացումը, դրա հուսալիության, երկարակեցության ապահովումը ևս ժողովրդի կենսամակարդակի աճի կարևոր գործոն են:*

*«Արդի փուլում քանակական ցուցանիշների հետ մեկտեղ,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի՝ կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված դիմումում,— ավելի ու ավելի մեծ չափով առաջին պլանի վրա են դրվում* երկրի տնտեսական աճի որակական ցուցանիշները: *Մեր օրերի հրամայական պահանջն է՝ արագացնել գիտատեխնիկական առաջընթացը, դրա նվաճումները, աշխատանքի, արտադրության ու կառավարման կազմակերպման առաջավոր մեթոդների արմատավորումը, ձեռնարկությունների վերակառուցման և տեխնիկական վերազինման պլանաչափ իրականացումը, արտադրանքի բարձր որակի համար մասսայական շարժման զարգացումը: Որակի համար, արդյունավետության բարձրացման համար մղվող պայքարով պետք է տոգորվեն մեր գործունեության բոլոր կողմերը» («Սովետական Հայաստան», 4 հունվարի 1975 թ., № 3):*

*Արտադրանքի որակի բարձրացումը կարևոր տեղ է գրավում երկրի արդյունաբերական ու մյուս ձեռնարկությունների աշխատողների հանդիպական պլաններում և սոցիալիստական պարտավորություններում: Վերջին տարիներին համամիութենական սոցիալիստական մրցությունը ծավալվում է հետևյալ նշանաբանով՝ «Տալ ավելի շատ, ավելի լավորակ արտադրանք՝ ավելի նվազ ծախսումներով»: Արտադրանքի որակի բարձրացումը փաստորեն ժողովրդատնտեսական նշանակություն ունեցող պրոբլեմ է, որի լուծմանն ի սպաս են դրվում մրցողների ջանքերը:*

*Հայաստանի աշխատավորների 1975 թ. սոցիալիստական պարտավորություններում խնդիր է դրվում հասնել այն բանին, որ արտադրանքի հիմնական տեսակները տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով չզիջեն արտասահմանյան լավագույն նմուշներին կամ գերազանցեն դրանց, թողարկվող արտադրատեսակների 98 տոկոսը համապատասխանի որակի բարձր և առաջին կարգի պահանջներին, 150 արտադրատեսակների շնորհվի պետական որականիշ: Նախատեսվում է թեթև արդյունաբերության մեջ կրկնապատկել բարձրորակ արտադրանքի իրացման ծավալը, մեկուկես անգամ ավելացնել հանրապետության ձեռնարկություններում թողարկվող էլեկտրոնային հաշվիչ մեքենաների աշխատանքի երաշխավորված ժամկետը:*

*Ընթացիկ հնգամյակի տարիներին կուսկազմակերպությունները, ձեռնարկությունների ու տնտեսությունների ղեկավարությունը սոցիալիստական մրցության մեջ վճռական տեղ են հատկացնում որակի հարցերին: Արդյունքների ամփոփման և հաղթողներին որոշելու ժամանակ նրանք հաշվի են առնում որակական ցուցանիշների կատարումը: Մրցանակային տեղերից զրկում են այն կոլեկտիվներին, որոնք թողարկում են խոտան արտադրանք:*

*Արտադրանքի որակն անմիջականորեն պայմանավորված է ինչպես ձեռնարկությունների տեխնիկական հագեցվածության, այնպես էլ արտադրության կուլտուրայի մակարդակով: Վերջինս ներառում է տեխնոլոգիական և աշխատանքային կարգապահության մակարդակը, արտադրության և աշխատանքի գիտական կազմակերպումը, հիգիենիկ ու էսթետիկական պայմանները, աշխատողի որակավորման, վարպետության, գիտակցականության աստիճանը, պատասխանատվության զգացումը և այլն:*

*Հաշվի առնելով, որ արտադրության գիտական կազմակերպման, աշխատանքային պրոցեսի խստականոն ռիթմի պահպանման, տեխնոլոգիայի անշեղ կիրառման, նյութերի խնայողաբար ծախսման միջոցով բարձրանում է արտադրանքի որակը, հանրապետության կուսկազմակերպություններն օգնում են արտադրական կոլեկտիվներին՝ այդ խնդիրները պատշաճ կերպով լուծելու համար: Կազմակերպական, տեխնիկական և դաստիարակչական կոմպլեքսային միջոցառումների իրականացմամբ նրանք նպաստում են արտադրության կուլտուրայի բարձրացմանը, գերազանց որակի արտադրանքի թողարկմանը: Դրա վկայությունն է հանրապետության առաջավոր ձեռնարկությունների օրինակը: Երևանի էլեկտրալամպերի, «Էլեկտրոն», էլեկտրաապարատների, Կիրովականի «Ավտոմատիկա», ճշգրիտ հաստոցների գործարանների կուսկազմակերպությունների ակտիվ միջամտությամբ արմատավորվել և կիրառվում է Միության մեջ լայնորեն հայտնի արտադրանքի անխոտան պատրաստման և առաջին ներկայացմամբ հանձնման սարատովյան մեթոդը: Այն ելնում է հետևյալ սկզբունքից. որակի համար, առաջին հերթին, պատասխանատվություն է կրում ինքը՝ կատարողը: Նախքան պատրաստի արտադրանքի հանձնումը, բանվորը պետք է համոզվի դրա բարձրորակ լինելու մեջ:*

*ՆԵՐԿԱՅՈՒՄՍ ՄԻՈՒԹՅԱՆ, ԻՆՉՊԵՍ ԵՎ ՄԵՐ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ առաջավոր ձեռնարկություններում արմատավորվում են աշխատանքի և արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային համակարգեր: Կուսկազմակերպությունները բարձրացնում են ինժեներա-տեխնիկական աշխատողների պատասխանատվությունը, որպեսզի դետալների, հանգույցների և արուրքների պատրաստման բոլոր փուլերում շեղում չլինի տեխնիկական փաստաթղթերի պահանջներից, ավելացվի առաջին ներկայացմամբ դետալների և հանգույցների հանձնումը տեխնիկական վերահսկողության բաժնին ու պատվիրատուին, ժամանակին ու ճշտորեն կատարվեն ձեռնարկության ղեկավարության հրահանգներն ու հրամանները: Այդ ամենը, անշուշտ, նպաստում է արտադրանքի որակի բարելավմանը և արտադրության արդյունավետության բարձրացմանը:*

*Ընդ որում, յուրաքանչյուրը պատասխանատու է անձնական և կոլեկտիվ աշխատանքի արդյունքների համար. զարգանում է, այսպես կոչված, ինքնահսկողությունը: Նշված համակարգերը հնարավորություն են ընձեռում օբյեկտիվորեն գնահատել յուրաքանչյուր աշխատողի և կոլեկտիվի ավանդը ընդհանուր արդյունքում, կոնկրետացնում են արտադրության առանձին օղակների խնդիրները:*

*Արտադրանքի և աշխատանքի որակի կառավարման համակարգերի անբաժանելի տարրերից են որակի գործակիցները: Դրանք ձեռնարկությունների ստորաբաժանումների՝ արտադրամասերի, տեղամասերի, բաժինների կոլեկտիվների աշխատանքի արդյունավետության գնահատման ընդհանրացնող*

բար կշիռը հասցնել մինչև 35 տոկոսի, այդ թվում բարձրորակ ֆիլտրով սիգարեթներինը՝ մինչև 92 տոկոսի:

Պետական որականիշ է շնորհվել նաև կոշիկի «Մասիս» ֆիրմայի ձեռնարկությունների թողարկած 21 անուն նորաձև նմուշներին, կարի ձեռնարկությունների 15 տեսակի հագուստներին և այլն: Եթե հնգամյակի վճռական տարում կոշիկի «Մասիս» ֆիրման արտադրել է պետական որականիշ ունեցող 125 հազար զույգ կոշիկ, որոշիչ տարում՝ 297 հազար, ապա եզրափակիչ տարում պարտավորվել է արտադրել 400 հազար զույգ:

Շոշափելի արդյունք է ձեռք բերել «Հայէլեկտրալույս» արտադրական միավորումը: Այստեղ 1975 թ. սկզբի տվյալներով 72 անուն արտադրանքի շնորհվել է պետական որականիշ: Դրանցից 22-ը լամպեր են, 50-ը՝ լուսատուներ: Միավորման թողարկած լուսարձակային լամպերը, եվրոպական ստանդարտներին համապատասխանելու համար, միջազգային էլեկտրատեխնիկական հանձնաժողովի կողմից արժանացել են «Ե—7» նշանի: Արտադրանքի 50 տոկոսից ավելին թողարկվում է պետական որականիշով: Ի դեպ, միավորման կոլեկտիվը հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարում տեխնիկա-տնտեսական բարձր արդյունքների համար հաղթող ճանաչվեց համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, նրան շնորհվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը:

«Հայէլեկտրաապարատ» արտադրական միավորման ձեռնարկություններում թողարկվող 24 արտադրատեսակներից 18-ը արժանացել են պետական որականիշի, կամ ամբողջ արտադրանքի ընդհանուր ծավալի 60 տոկոսը թողարկվում է որականիշով:

Լավորակ արտադրանք են թողարկում նաև Երևանի ալյումինի գործարանը, կարի միավորման գլխամասային ֆաբրիկան, Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանը և այլ ձեռնարկություններ: Իններորդ հնգամյակի տարիներին Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանում լրջորեն են զբաղվում մետաղահատ հաստոցների որակի և ճշգրտության բարձրացման հարցով: Ներկայումս արտադրվող 16404Ա և 16405Ա մակնիշի հաստոցները ո՛չ միայն չեն զիջում արտասահմանյան նույնատիպ նմուշներին, այլև որոշ հատկանիշներով գերազանցում են դրանց: Կուսկոմիտեն և արտադրամասային կուսկազմակերպությունները պարբերաբար անդրադառնում են որակի բարձրացման հարցերին, հսկողություն սահմանում դրանց նկատմամբ: Այն իրականացնում է վերահսկիչների հատուկ խումբը, որում ընդգրկված են նաև կոմունիստներ: Ընդ որում, կարևոր դետալների համար առանձին-առանձին կազմվում է ճշգրտության «անձնագիր», որի հիման վրա էլ դրանք հավաքվում են: Կուսկոմիտեի և դիրեկցիայի նախաձեռնությամբ աշխատանքային շաբաթի օրերից մեկը համարվում է «որակի օր». քննարկվում են որակի բարձրացման հարցերը, տրվում են հանձնարարականներ:

Գործարանի արտադրանքի բարձր որակի և երկրի սահմաններից դուրս դրա ճանաչման խոսուն վկայությունն է այն, որ կիրովականյան հաստոցները առաքվում են արտասահմանյան 35 երկիր: Դեռ ավելին, Անգլիայի հաստոցաշինական ֆիրմաները ընթացիկ տարում գնել են Կիրովականի գործարանի արտադրած 4532Ց մակնիշի էլեկտրակայծային-ծրագրային գերճշգրիտ հաստոցի արտադրության արտոնագիրը: Ձեռնարկության հաստոցներն ամեն տարի ներկայացվում են միջազգային ցուցահանդեսներում ու տոնավաճառներում: 1974 թ. Բաղդադի, Թեհրանի, Զագրեբի ցուցահանդեսներում նշվեց դրանց բարձր որակը:

Որակի բարձրացման համար ծավալված մրցությունում ծնվում են հայրենասիրական և օգտակար նախաձեռնություններ: Այս առումով հանրապետությունում հայտնի են արդյունաբերական շատ ձեռնարկությունների կոլեկտիվներ: 1974 թ. Երևանի էլեկտրալամպերի գործարանի տեխնիկական վերահսկողության բաժնի հսկիչ Լենա Եփրեմյանը հանդես եկավ մի նախաձեռնությամբ, որի նշանաբանն էր՝ ընդունել միայն գերազանց որակի արտադրանք, չունենալ բողոքներ սպառողներից: Նախաձեռնությունը պաշտպանեցին «Հայ-



էլեկտրալույս» արտադրական միավորման ձեռնարկությունների բոլոր հըսկիչները: Արդյունքը եղավ այն, որ 30 տոկոսով նվազեցին բողոքարկները:

Հնգամյակի որոշիչ տարվա սկզբին Լենինականի տեքստիլ կոմբինատի գործվածքային ֆաբրիկայի կոլեկտիվը, ենթավարպետ Գ. Թորոսյանի նախաձեռնությամբ, որոշեց 1974 թվականն սկսել «Թողարկել միայն բարձրորակ արտադրանք» նշանաբանով: Այդ նախաձեռնությունը քննարկվեց կուսակցության Լենինականի քաղկոմի բյուրոյում, հավանության արժանացավ և լայն արձագանք գտավ քաղաքի մյուս ձեռնարկություններում: ՀԿԿ Կենտկոմի բյուրոն քննարկեց կոմբինատի երիտասարդ բանվորների, ենթավարպետների և վարպետների նոր նախաձեռնությունը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման և գերազանց որակի արտադրանքի ավելացման համար կոմպլեքսային համագործակցություն-մրցություն ծավալելու հարցը: Վերջիններս պատրաստակամություն են հայտնել աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 15—20 տոկոսով և ընդհանուր արտադրանքի 50 տոկոսը թողարկել որականիշով: Կենտկոմի բյուրոն հավանություն տվեց լենինականցիների հայրենասիրական նախաձեռնությանը և հանձնարարեց կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեներին, ՀԱՄԽ-ին, տնտեսական ղեկավարներին, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին՝ Լենինականի տեքստիլագործների նախաձեռնությունը տարածել արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական կազմակերպությունների, տրանսպորտի և կապի կոլեկտիվներում, մրցողներին ամեն կերպ օգնել ու աջակցել՝ նրանց ստանձնած պարտավորությունների կատարման և բանվորների շրջանում առաջավոր փորձի արմատավորման գործում, լայն պրակտիկա դարձնել վարպետների ու բանվորների համագործակցության համատեղ կոմպլեքսային պարտավորություն-պլանների ընդունումը:

Հնգամյակի եզրափակիչ տարում Երևանի էլեկտրաապարատների գործարանի կոլեկտիվի նախաձեռնությունն է՝ արտադրանքի ընդհանուր ծավալի 50 տոկոսը թողարկել միայն պետական որականիշով, իրականացնել միջոցառումների կոմպլեքսային պլան և ներգործարանային խոտանից առաջացած կորուստները, 1974 թ. համեմատությամբ, կրճատել 15 տոկոսով:

Ընթացիկ տարում Երևանի Լենինյան շրջանի աշխատավորական կոլեկտիվները հանդես են եկել 1975 թվականը արտադրանքի որակի բարձրացման տարի դարձնելու նախաձեռնությամբ: Կուսակցության Երևանի քաղկոմի բյուրոն հավանություն է տվել այդ նախաձեռնությանը և հանձնարարել այն տարածել քաղաքի մյուս շրջաններում:

ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՈՐԱԿԻ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ ՊԵՏԱԿԱՆ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ կարևոր տեղ ունի տնտեսական խթանումը: Թողարկվող արտադրանքը մշտապես նորացնելու, որակը բարձրացնելու համար ներկայումս ձեռնարկությունների աշխատողներից պահանջվում է լուծել տեխնիկական և կազմակերպական շատ հարցեր, կատարել կենդանի և առարկայացված աշխատանքի լրացուցիչ ծախսեր: Հետևաբար, ծագում է արտադրական կոլեկտիվներին տնտեսապես խրախուսելու անհրաժեշտությունը՝ արտադրանքի որակը բարձրացնելու համար: Այլապես ձեռնարկություններին երբեմն ձեռնտու է շարունակել արդեն յուրացված արտադրատեսակների արտադրությունը, քան թողարկել նոր տեսակի արտադրանք:

ՍՄԿԿ XXIV համագումարում շեշտվեց ժողտնտեսության կառավարման ասպարեզում տնտեսական խթանների ուժեղացման անհրաժեշտությունը: Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը նշեց այդ խնդրի լուծման հիմնական ուղիները: «Դա տնտեսական այնպիսի պայմանների ստեղծումն է, որոնք, նախ և առաջ, ձեռնարկությանը դրդեին ստանձնել օպտիմալ պարտավորություններ, այսինքն՝ ընդունել լարված պլաններ, է՛լ ավելի ռացիոնալ օգտագործել կապիտալ ներդրումներն ու աշխատանքային ռեսուրսները, երրորդ՝ առավելագույն չափով խթանեին գիտատեխնիկական առաջադիմության արագացումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը և

երրորդ՝ նպաստեին արտադրանքի որակի բարձրացման համար հետևողականորեն մղվող պայքարին» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութեր, էջ 92)։

Սոցիալիստական մրցության արդյունավետության կարևոր պայման է նյութական և բարոյական խթանների զուգորդումը։ Վ. Ի. Լենինը բազմիցս շեշտել է, որ սոցիալիստական մրցության հաջողությունը, աշխատավորական զանգվածների ստեղծագործական նախաձեռնությունների ծավալումը շատ բանով պայմանավորված են լավագույն աշխատողների նյութական և բարոյական խրախուսման ճիշտ մտածված սիստեմի կիրառմամբ։

Արտադրանքի որակի բարելավման խթաններից են ձեռնարկությունների նյութական խրախուսման ֆոնդերին արվող լրացուցիչ հատկացումները (ելնելով որակի առաջադրանքների կատարման աստիճանից)։ Ընդ որում, դրանք հաճախ մեծ գումարներ են կազմում։ Այսպես, «Հայէլեկտրալույս» արտադրական միավորումում 1974 թ. նյութական խրախուսման ֆոնդին լրացուցիչ հատկացվել է 428,2 հազար ռուբլի, այդ թվում 54 հազարը՝ որակի բարձրացման հաշվին։ Իսկ սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության ֆոնդին որակի հաշվին լրացուցիչ հատկացվել է 17,9 հազար ռուբլի։

Որակի բարելավման լավ խթան են նաև պետական որականիշ ունեցող արտադրանքի իրացումից ստացված շահույթից կատարված մասհանումները, նոր արտադրանքի համար սահմանվող գները և այլն։ Ցածրորակ արտադրանք թողարկելու, ստանդարտներից և տեխնիկական պայմաններից շեղումներ կատարելու դեպքում կիրառվում են նաև տնտեսական սանկցիաներ։ Ստանդարտին չհամապատասխանող և ցածրորակ ատադրանքի իրացումից ձեռնարկության ստացած ողջ շահույթը գանձվում է պետական բյուջե և չի սեռվում արտադրանքի իրացման ու շահույթի ստացման հաշվետու տվյալներում։

Լայնորեն խթանվում է առաջին ներկայացմամբ արտադրանքի հանձնումը, որը բնութագրում է պրոֆեսիոնալ վարպետության, կարգապահության, հանձնարարված գործի համար պատասխանատվության բարձր մակարդակը։ Այս առումով մեր հանրապետությունում զգալի գործ է արվում։ Այսպես, «Հայէլեկտրալույս» արտադրական միավորումում մեծ ուշադրություն է նվիրվում բարձրորակ արտադրանք թողարկելու համար նյութական խրախուսմանը։ Էլեկտրալամպերի գործարանի առանձին արտադրամասերում բանվորներին պարգև չի վճարվում, եթե նրանք արտադրանքը տեխնիկական վերահսկողության բաժին չեն հանձնում առաջին ներկայացմամբ (օրինակ, լյումինեսցենտային արտադրամասում), իսկ ուրիշներում էլ արտադրանքը երկրորդ ներկայացմամբ հանձնելու դեպքում պարգևի չափը կրճատվում է 50 տոկոսով (օրինակ, ապակու նախապատրաստական արտադրամասում)։ Պարգևը տրվում է տեխնիկապես հիմնավորված նորմաների կատարման ժամանակ, ամսական գործարքային աշխատավարձի 10—20 տոկոսի չափով, և գերակատարման ամեն մի տոկոսի դիմաց այն ավելացվում է երկու տոկոսով։ Նման մեթոդը բավականին խթանում է արտադրանքի որակի բարելավումը։

Արտադրանքի որակի բարձրացման համար մրցություն ծավալած աշխատողներին կուսկազմակերպությունները խրախուսում են նաև բարոյապես։ Նրանք ձեռնարկությունների ղեկավարության հետ մշակում են ու կիրառում լավագույն աշխատողների բարոյական խրախուսման տարբեր ձևեր. «որակի գերազանցիկ», «բարձր որակի վարպետ», «ոսկե ձեռքերի վարպետ» և այլ պատվավոր կոչումներ, զանազան մրցույթներ ու ստուգատեսներ։ Բարոյական խթանման ձևերից է առաջավոր շատ ձեռնարկություններում արդեն արմատավորված հետևյալ պրակտիկան։ Եթե ձեռնարկության բանվորները 6 ամսվա ընթացքում արտադրանքը հանձնում են միայն առաջին ներկայացմամբ, ապա նրանց տրվում է անձնական դրոշմ։ Դա մեծ վստահություն և պատիվ է տվյալ աշխատողի համար։ Անձնական դրոշմը բանվորներին հանձնվում է ժողովում՝ հանդիսավոր պայմաններում, ուր տրվում է նրա ծառայությունների գնահատականը, ասվում են դրվատանքի խոսքեր։ «Հայէլեկտրաապարատ» արտադրամիավորման ավելի քան 100 բանվորներ ունեն անձնական դրոշմ,



արտադրանքը թողարկում են՝ շրջանցելով տեխնիկական վերահսկողության բաժինը։ Շատ ձեռնարկություններում առանց խոտանի աշխատողները և բարձրորակ արտադրանք թողարկողներն ստանում են «Որակի գերազանցիկ»-ի նշան և ինքնահսկողության իրավունքի վկայական։

Մրցության մասնակիցների նյութական և բարոյական խթանման ճիշտ զուգակցումը նպաստում է արտադրանքի որակի բարձրացմանը, ստանձնած պարտավորությունների անթերի կատարմանը։

ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՈՐԱԿԻ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ ԾԱՎԱԼՎԱԾ ՄՐՑՈՒԹՅՈՒՆՈՒՄ, ձեռք բերված հաջողություններին զուգընթաց, դեռևս առկա են լուրջ թերություններ։ Հանրապետության արդյունաբերական շատ ձեռնարկություններ թողարկում են ցածրորակ արտադրանք, որը, ինչպես նշեց ՀԿԿ Կենտկոմի հունվարյան (1975 թ.) պլենումը, տեխնոլոգիական պրոցեսների ոչ կատարյալ լինելու, արտադրական և աշխատանքային թույլ կարգապահության, աշխատողների մի մասի ցածր որակավորման, ոչ ռիթմիկ աշխատանքի, ստանդարտների և տեխնիկական պայմանների խախտման, վերահսկողության անբավարար դրվածքի հետևանք է։ Առանձնապես ցածրորակ է ՀՍՍՀ թեթև, փայտամշակման, սննդի և տեղական արդյունաբերության արտադրանքը։ Ցածրորակ արտադրանք են թողարկում Սպիտակի շաքարի գործարանը, Երևանի ձեթ-օճառի և հրուշակեղենի-մակարոնի կոմբինատները, որոնց հասցեին քննադատական խոսք ասվեց ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումում։ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Դեմիրճյանը աններելի համարեց, որ 1974 թ. հանրապետության արդյունաբերության թողարկած 138 արտադրատեսակներ ատեստավորվել են որակի երկրորդ կատեգորիայով և ենթակա են արտադրությունից հանվելու։

Երևանի Սովետականի շրջանի ձեռնարկությունների թողարկած 400 արտադրատեսակներից, անցյալ տարվա դրությամբ, պետական որականիշ են ստացել ընդամենը 14-ը կամ 3,5 տոկոսը։ Իսկ տեխնոլոգիական սարքավորանքի գործարանի 45 արտադրատեսակներից ոչ մեկը որականիշի չի արժանացել։ Քսանվեց կոմիսարների շրջանի շուրջ 30 արդյունաբերական ձեռնարկություններում որականիշով թողարկվող 50 արտադրատեսակներից 48-ը պատկանում են երկու ձեռնարկությունների։ Մինչդեռ մյուսները հիմնականում արտադրանքը թողարկում են առանց որականիշի։ Որակի պետական տեսչության տվյալներով, շրջանի տրիկոտաժի, «Արաբկիր» կահույքի ֆաբրիկաների և ուրիշ ձեռնարկությունների ստուգված ապրանքների 90 տոկոսից ավելին չի համապատասխանել պետական ստանդարտին։ Հայաստանի արդյունաբերության թողարկած արտադրատեսակների ընդամենը 4,5 տոկոսն ունի պետական որականիշ, որը բավականին ցածր է միութենական միջին ցուցանիշից։

Բնական է, որ ցածրորակ, պահանջարկ չունեցող արտադրանքի թողարկման պայմաններում կուտակվում են գերնորմատիվային ապրանքային պաշարներ, ժողովրդական տնտեսությունը հսկայական վնասներ է կրում։ Եթե Հայկական ՍՍՀ առևտրական ցանցում 1970 թ. ապրանքային մնացորդները կազմում էին 34 մլն ռուբլի, ապա 1974 թ.՝ 45 մլն ռուբլի։

Որպես կանոն, ցածրորակ արտադրանք թողարկող ձեռնարկություններն ստանում են բողոքագրեր, վճարում տուգանք, ոչ բարվոք վիճակում է գտնվում դրանց ֆինանսա-տնտեսական գործունեությունը։ Երևանի կարի 2-րդ միավորման № 1 ֆաբրիկան 1974 թ. սպառողներից բողոքագրեր է ստացել իր թողարկած մոտ 340 հազար ռուբլի արժողությամբ 8.387 միավոր հագուստի որակի վերաբերյալ և վճարել է 24 հազար ռուբլի տուգանք։ Չնայած որ կոշկեղենի արտադրության բնագավառում վիճակը համեմատաբար լավ է, սակայն այստեղ էլ դրությունը «փրկում են» տղամարդու և կանացի բարձր գներ ունեցող կոշիկները։ Մինչդեռ մանկական կոշիկները լինում են ցածրորակ և մեծ մասամբ պահանջարկին չեն համապատասխանում։

Ցածրորակ արտադրանք թողարկելու համար հանրապետության տեղական արդյունաբերության մինիստրության տրիկոտաժի № 1 ֆաբրիկան 1974 թ.

ստացել է օրական միջին հաշվով մեկ բողոքագիր: Ֆաբրիկային է վերադարձվել ավելի քան 2,4 մլն արժողությամբ 358 հազար միավոր արտադրանք, որի համար վճարվել է 50 հազար ռուբլի տուգանք: Ցածրորակ և խոտան արտադրանք տալու պատճառով անցյալ տարվա հունիսին առևտրական կազմակերպությունները դադարեցրել են ֆաբրիկայի արտադրանքի ընդունումը:

Վերը նշված փաստերը վկայում են, որ կուսկազմակերպությունները հարկ եղած չափով չեն զբաղվում արտադրանքի որակի բարձրացման հարցերով, մրցողների ջանքերը չեն ուղղում այդ առթիվ ստանձնած պարտավորությունների կատարմանը: Եվ իրականում սոցիալիստական մրցությունը կրում է ձևական բնույթ, որակի վերաբերյալ կետերը մոռացության են տրվում: Մինչդեռ «Արտադրանքի որակի բարձրացման համար,— ասաց ընկ. Կ. Դեմիրճյանը ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումում,— բոլորը պետք է պատասխանատու լինեն: Արտադրանքի որակի բարձրացումը չպետք է միանվագ միջոցառում լինի, այլ՝ հետևողական, խորապես մտածված, պլանաչափ պրոցես, որը պետք է ընդգրկի կազմակերպական, գիտատեխնիկական, տնտեսական և սոցիալական բնույթի փոխադարձաբար շաղկապված միջոցառումներ: Դա համաժողովրդական գործ է, համակուսակցական խնդիր: Կուսակցությունը տասներորդ հնգամյակը հայտարարում է որակի հնգամյակ» («Լենինյան ուղիով», № 2, էջ 12):

Պրակտիկայում երբեմն այլ ցուցանիշների կատարման համար, մրցության առաջավորների շարքն են դասում այն ձեռնարկությունները, որոնց արտադրանքը հեռու է լավագույնը կոչվելուց: Մինչդեռ կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունները պարտավոր են նույնատիպ ձեռնարկությունների գործունեության գնահատման և մրցության արդյունքների ամփոփման ժամանակ, որպես հիմնական ցուցանիշ, օգտագործել պետական որականիշի արժանացած արտադրանքի տեսակարար կշիռը ընդհանուր արդյունքում:

Հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում դեռևս մեծ չափերի են հասնում խոտանից առաջացած կորուստները: Միայն 1974 թ. դրանք կազմեցին 5,5 մլն ռուբլի:

Ընթացիկ տարվա ապրիլին ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը որոշում ընդունեցին «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին»: Այն միտում է արագացնել հանրապետության էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման տեմպերը, բարձրացնել հանրային արտադրության արդյունավետությունը, ապահովել աշխատավորների բարեկեցության անշեղ աճը: Այդ որոշմամբ խնդիր է դրվում առավել ծավալել սոցիալիստական մրցությունը, աշխատավորական կոլեկտիվների ջանքերը մոբիլիզացնել կուսակցության մշակած տնտեսական և սոցիալական քաղաքականության հետևողական իրականացման համար: Անտարակույս, ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության նոր միջոցառումը կնպաստի հանրապետության էկոնոմիկայի վերելքին:

# ՀՈՒՍԱԴՐՈՂ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ

**Վ. Մ. ՄՈՎՍԻՍՅԱՆ**

ԲՈԼՈՐ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ՈՂՋ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ խանդավառությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1975 թ. ապրիլյան պլենումի որոշումը՝ 1976 թ. փետրվարին կուսակցության XXV հերթական համագումարը հրավիրելու մասին: ՍՄԿԿ-ի ողջ հերոսական պատմության ընթացքում նրա համագումարները հսկայական նշանակություն են ունեցել կուսակցության ու երկրի կյանքում, կարևորագույն ուղենիշ եղել կոմունիստական իդեալների կենսագործման համար մղվող պայքարի ճանապարհին: ՍՄԿԿ XXV համագումարը հայրենանվեր գործերով դիմավորելու համար, հանրապետության աշխատավորների հետ մեկտեղ, իրենց ուժերն ու ստեղծագործական ունակություններն են մոբիլիզացնում նաև Ստեփանավանի շրջանի գյուղատնտեսության աշխատողները:

Շրջանի կուսակցական կազմակերպությունները, սովետական ու տնտեսական մարմինները, գործողության մարտական ծրագիր ունենալով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, ընթացիկ հնգամյակում իրականացրել են մի շարք կոնկրետ միջոցառումներ, որոնք նպաստել են տնտեսությունների առջև ծառացած խնդիրների լուծմանը: Կոնկրետ ուզում եմ խոսել անասնապահության զարգացման մի քանի պրոբլեմների մասին:

Ստեփանավանը անասնապահական ավանդական շրջան է: Այստեղ զարգացման բարձր աստիճանի են հասել դրա բոլոր ճյուղերը, մասնավորապես կաթնային տավարաբուծությունը: Կաթի համախառն արտադրության և պետությանը դրա հանձնման ու վաճառքի ծավալով շրջանը հանրապետությունում գրավում է երկրորդ տեղը: Այն տարեկան արտադրում է ավելի քան 13 հազար և մթերակայան հանձնում մոտ 11 հազար տոննա կաթ: Շրջանում վաղուց ի վեր գործում է պետական տոհմաբուծարան, որն զբաղվում է տավարի Կովկասյան գորշ ցեղի բուծմամբ ու կատարելագործմամբ: Տոհմային տնտեսություններն ամեն տարի հարյուրավոր գլուխ ցեղական, բարձրարժեք մատղաշներ են մատակարարում հանրապետության մյուս շրջաններին: Այլ խոսքով, շրջանը տավարի այդ ցեղի տարածման ու բարելավման առաջնակարգ բազաներից է:

Հաշվի առնելով շրջանի տեղն ու դերը հանրապետության անասնապահության զարգացման գործում՝ կուսկազմակերպությունները, սովետական և տնտեսական մարմինները, անասնապահության մասնագետներն ու բոլոր աշխատողներն իրենց ջանքերն ուղղում են շրջանի առջև ծառացած բարդ ու պատվավոր խնդիրների լուծմանը:

ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԸ ՀԱՄԱՐԵՑ գյուղատնտեսության կարևորագույն խնդիր: Կուսշրջկոմն ու սկզբնական կազմակերպություններն իրենց գործունեության ընթացքում ելնում են անասնապահության զարգացման վերաբերյալ համագումարի այն պահանջից, որ «Բնակչությանն անխափան կերպով առավել արժեքավոր սննդամթերքներ մատակարարելու, այդ մթերքների նկատմամբ սովետական մարդկանց աճող պահանջմունքը բավարարելու համար նոր հնգամյակում պետք է խոշոր առաջ-

աճեցման միջտնտեսային միավորում՝ 2.000 գլխի համար, Ստեփանավանի
սովխոզ-տեխնիկումի Լ. Բերդի տեղամասի բազայի վրա։ Դա հնարավորու-
թյուն կընձեռի արագացնել հոտի վերարտադրությունը խոշոր տնտեսություն-
ներում, բարելավել կովերի կազմը, ավելացնել գլխաքանակը, բարձրացնել
մթերատվությունը և, որ ամենակարևորն է, դրանց աճեցումը կազմակերպել
գիտականորեն հիմնավորված տեխնոլոգիայով։ Երկրորդ, նախատեսվում է
առաջիկա հնգամյակում կառուցել կաթի արտադրության երկու համալիր՝
Գյուլագարակի սովխոզում՝ 800, Կաթնաղբյուրի սովխոզի, Գետաշեն և Շա-
գարդա բնակավայրերի բազայի վրա՝ 1.000 գլուխ կովի համար։
Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները հետևում են,
որպեսզի տնտեսությունները անշեղորեն շարունակեն ցեղաբուծական աշխա-
տանքը և մսի համար մատղաշի խնամքիվ բտումը։ Նախատեսվում է ամեն
տարի խոտենսիվ եղանակով բտել մոտ 2.000 գլուխ արու մատղաշներ և ցեղի
բարելավման նպատակով աճեցնել 500 գլուխ տոհմային ցուլիկներ։
Ձվի և թռչնի մսի արտադրության ավելացման նպատակով անհրաժեշտ է
ընդլայնել ներկայումս գործող տոհմային թռչնաբուծական սովխոզը։ Այդ
գործն արդեն ձեռնարկվել է, և այս տարի կկատարվի ավելի քան 2,5 մլն
ռուբլու շինմոնտաժային աշխատանք։ Գալիք հնգամյակում սովխոզը կգործի
լրիվ կարողությամբ. ձվի արտադրությունը ներկայիս 1,8 մլն-ի փոխարեն
կհասնի 5 մլն-ի, մսինը՝ 324 տոննայի, այժմյան 160-ի փոխարեն։
Մսի խոշոր ռեզերվ է ճագարաբուծությունը։ Գործող միջտնտեսային ճա-
գարաբուծական ֆերման անցած տարի արտադրել է մոտ 30 տոննա միս։
Առաջիկա հնգամյակում ֆերմայի կարողությունը կմեծանա և կհասնի տարե-
կան 100 տոննայի։
Նոր հնգամյակում որոշված է ստեղծել նաև մեղվաբուծական միջտնտե-
սային ձեռնարկություն։ Այստեղ կկենտրոնացվեն բոլոր տնտեսությունների
մեղվաբնտանիքները։ Դրանով զգալիորեն կբարձրանա այդ ճյուղի արդյունա-
վետությունը։
Անասնապահության այս և հեռանկարային մյուս պրոբլեմների լուծումը
պայմանավորված է շինարարական աշխատանքի ժամանակին կազմակերպ-
մամբ։ Այդ նպատակով արդեն ստեղծվել է միջտնտեսային շինարարական
կազմակերպություն, որը կոլտնտեսություններում ու սովխոզներում, ինչպես
նաև միջտնտեսային ձեռնարկություններում կկառուցի անասնապահական տի-
պային շենքեր և արտադրական այլ օբյեկտներ։
ԳԼԽԱՎՈՐ ԽՆԴԻՐՆ ԱՅԺՄ ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹՅԱՆ ՎԱՐՄԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ
բարձրացումն է։ Այսօր չի կարելի յոլա գնալ հին ձևերով ու մեթոդներով։ Զար-
գացած անասնապահությունը ենթադրում է մեքենայացման բարձր աստիճան,
գիտական մոտեցում, կերակրման ու խնամքի տեխնոլոգիայի կատարելագոր-
ծում, կերի բազայի ամրապնդում։ Այս խնդիրները ևս գտնվում են կուս-
շրջկոմի, սկզբնական կուսկազմակերպությունների տեսադաշտում։
ՍՄԿԿ XXIV համագումարը անասնապահության զարգացման գլխավոր և
հեռանկարային ուղիներից մեկը համարեց աշխատատար պրոցեսների կոմպ-
լեքսային մեքենայացումը։ Չնայած այս ասպարեզում արվել են որոշակի
քայլեր, բայց մեքենայացման ներկա մակարդակը չի բավարարում այսօրվա
պահանջներին։ Շրջանի կուսկազմակերպություններին չի կարող չանհանգըս-
տացնել այն, որ տնտեսությունների շատ ղեկավարներ պահպանողականու-
թյուն են հանդես բերում կովերի մեքենայական կթի հարցում։ Կուսշրջկոմը և
շրջսովետի գործկոմը մշակում են ֆերմաների կոմպլեքսային մեքենայացման
կոնկրետ պլան։ Նախատեսվում է 1980 թ. կովերի մեքենայական կիթը հասցը-
նել 80 տոկոսի, գրեթե ամբողջովին մեքենայացնել գոմաղբի հեռացումը, ջրա-
մատակարարումը և կերի բաշխումը, բոլոր ֆերմաներում ունենալ մեքենա-
յացված կաթնատնակներ և կերի նախապատրաստման արտադրամասեր։
Ինչպես արդեն նշվեց, շրջանի տնտեսությունները վերջին տարիներին
ներդրել են նոր կերատեսակներ։ Այս գործը շարունակվելու է նաև նոր՝
տասներորդ հնգամյակում. կերի բազայի ամրապնդումը կմնա առաջնահերթ



խնդիրներից մեկը։ Վիտամինային խոտալյուրի այժմ գործող երկու ագրեգատ-
ների (Վարդաբլուրի կոլտնտեսության և Ստեփանավանի սովխոզ-տեխնիկու-
մի) փոխարեն այս տարի կգործի ութը։ Խոտալյուրի պատրաստմանը կձեռ-
նարկեն նաև Գյառգյառի, Գյուլագարակի, Ուռուտի, Լեջանի սովխոզները,
Պուշկինոյի և Սվերդլովի կոլտնտեսությունները։ Եկող տարի խոտալյուր պատ-
րաստող ագրեգատներ կունենան բոլոր տնտեսությունները։ Այս ամենը հնա-
րավորություն կընձեռի շրջանում տարեկան պատրաստել ավելի քան 3.500
տոննա խոտալյուր (1974 թ.՝ 400 տոննա)։
Կերային կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու և բազմամյա
խոտհարքներից տարեկան երկու բերք ստանալու նպատակով նախատեսված է
ընդլայնել ոռոգելի հողատարածությունները։ Կիրովի գյուղի մոտ կառուցվում
է ջրհան կայան, որը Ձորագետի կիրճից ջուրը կհանի և կբաշխի Լոռվա սա-
րահարթի ցանքադաշտերին։
Կերի լավ ռեզերվ է լինելու նաև սարալանջերին նախկինում օգտագործ-
ված, բայց էրոզիայի ենթարկված վարելահողերում կորնգանի ցանքի կատա-
րումը։ Այս ձևով շրջանը լրացուցիչ կունենա ավելի քան 1.000 հեկտար խոտ-
հարք։
Շրջանի կուսկազմակերպությունը, բոլոր կոմունիստները, աշխատավոր-
ները գոհունակությամբ ընդունեցին «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսու-
թյան հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և
ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշումը։ Դա մեկ անգամ ևս վկայում է կու-
սակցության և կառավարության կողմից հայ ժողովրդի նկատմամբ ցուցաբե-
րած ջերմ հոգատարության մասին։ Ստեփանավանցիները, արտահայտելով
իրենց երախտագիտությունը կուսակցությանն ու կառավարությանը, անձամբ
ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևին, պատրաստակամու-
թյուն են հայտնում այդ հոգատարությանը պատասխանել հայրենանվեր գոր-
ծերով։
Աշխատանքային խանդավառությունը համակել է նաև անասնապահնե-
րին։ Մասնակցելով գյուղատնտեսության աշխատողների համամիութենական
սոցիալիստական մրցությանը, նրանք պարտավորվել են այս տարի ստանալ
14.000 տոննա կաթ, 1.800 տոննա միս, 44 տոննա բուրդ, 3 մլն 200 հազար
հատ ձու, ժամկետից շուտ կատարել պետությանը դրանց վաճառքի առաջա-
դրանքները։ Կուսկազմակերպությունները գլխավորում են անասնապահների
մրցությունը և աշխատանքային խանդավառությունը, նրանց ուժերն ուղղում
իններորդ հնգամյակի խնդիրների և հեռանկարային պրոբլեմների լուծմանը։

# Կուսակցական կյանքի խրոնիկա

ՀԿԿ ԳՈՒԳԱՐՔԻ ՇՐՋԿՈՄԸ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐ ՄՇԱԿԵՑ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի՝ ձեռնարկությունների, արտադրական տեղամասերի, շինարարական, տրանսպորտային կազմակերպությունների, ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի վարպետներին ուղղած նամակի առթիվ:

Կուսշրջկոմի բյուրոն նշեց, որ ընկ. Բրեժնևի նամակն ամենաջերմ արձագանք է գտել աշխատավորության շրջանում:

Ընդունած որոշմամբ բյուրոն պարտավորեցրեց ձեռնարկությունների ղեկավարներին, սկզբնական կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին՝ մշակել գործնական միջոցառումներ արտադրության մեջ վարպետների դերը բարձրացնելու, նրանց ստեղծագործական նախաձեռնությունը զարգացնելու և անհրաժեշտ օգնություն ցույց տալու համար: Հանձնարարված է ամենուրեք անցկացնել արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարական ու տրանսպորտային կազմակերպություններում աշխատող վարպետների ժողովներ ու հավաքներ, լայնորեն տարածել առաջավոր վարպետների աշխատանքի փորձը:

***

«ԼԱՆՋԱԶԱՏ ԳՅՈՒՂԻ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ կոմունիստների կողմից ՍՄԿԿ Կանոնադրական պահանջների կատարման մասին»— այսպիսի հարց քննարկեց ՀԿԿ Արտաշատի շրջկոմի բյուրոն:

Նշվեց, որ կոլտնտեսության կուսկազմակերպությունը որոշակի աշխատանք է կատարել իրենց կանոնադրական պարտականությունների կատարման նկատմամբ կոմունիստների պատասխանատվությունը բարձրացնելու ասպարեզում:

Բյուրոն միաժամանակ արձանագրեց, որ ՍՄԿԿ մի քանի անդամներ դեռևս պատասխանատվության անհրաժեշտ զգացումով չեն վերաբերվում իրենց պարտականությունների կատարմանը, չեն ցուցաբերում սկզբունքայնություն և հետևողականություն իրենց առջև ծառացած խնդիրների լուծման գործում: Անհրաժեշտ աշխատանք չի տարվում առաջավոր դաշտավարներին ու մեխանիզատորներին կուսակցության մեջ ընդունելու համար: Կոմունիստներից ոմանք չեն ապահովում իրենց ավանգարդային դերը արտադրության մեջ, չեն ցուցաբերում քաղաքական բավարար ակտիվություն:

Կուսշրջկոմի բյուրոն մշակեց անհրաժեշտ միջոցառումներ՝ Լանջազատ գյուղի կոլտնտեսության կուսկազմակերպության աշխատանքում բացահայտված թերությունները վերացնելու համար:

***

ՊԵՏՈՒԹՅԱՆԸ ՎԱՃԱՌՎՈՂ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ՈՐԱԿԸ բարձրացնելու և արտադրության ծավալը մեծացնելու նպատակով ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի բյուրոն մշակեց գործնական միջոցառումներ:

Հանձնարարվեց շրջսովետի գործկոմին՝ ուսումնասիրել գործերի վիճակը յուրաքանչյուր կոլտնտեսությունում ու սովխոզում և ներկայացնել համապատասխան առաջարկներ:

Միջոցներ են ձեռնարկվում պետությանը հանձնվող կաթի, մսի և ձվի որակը բարձրացնելու համար: Դրա իրականացման պատասխանատվությունն անմիջականորեն դրվել է տնտեսությունների ֆերմաների վարիչների և զոոտեխնիկների վրա:



***

ՀԿԿ ԵՐԵՎԱՆԻ ՔԱՂԿՈՄԻ ԲՅՈՒՐՈՆ քննարկեց «Տամբովի մարզային կուսկազմակերպությունում քննադատության և ինքնաքննադատության վիճակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կենսագործման հարցը: Բյուրոն նշեց, որ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման հիման վրա սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության լայն ծավալումը կնպաստի կոմունիստների, աշխատավորների նախաձեռնության հետագա զարգացմանը, պատասխանատվության ըստ ամենայնի բարձրացմանը, կուսակցության ու կառավարության առաջադրած խնդիրների լուծման համար նրանց ուժերի մոբիլիզացմանը:

ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից բխող խնդիրների ու պահանջների կատարման նպատակով քաղկոմի բյուրոն հաստատեց միջոցառումների պլան, պարտավորեցրեց կուսշրջկոմներին և սկզբնական կուսկազմակերպություններին՝ պլենումներում, բյուրոյի նիստերում, կուսժողովներում քննադատության լայն ծավալման միջոցով բացահայտել թերությունները ու բացթողումները, ուղիներ նշել դրանց անհապաղ վերացման համար:

«Երեկոյան Երևան» և բազմատպաքանակ թերթերի խմբագրություններին հանձնարարված է հաճախակի հրապարակել ղեկավարման ոչ ճիշտ մեթոդները, անտնտեսվարության փաստերը, կուսակցական աշխատանքի թերությունները բացահայտող քննադատական հոդվածներ, թղթակցություններ և աշխատավորների նամակներ:

Նախատեսված է քաղաքի կուսակցական ակտիվի համար անցկացնել գիտատեսական կոնֆերանս՝ «Քննադատությունն ու ինքնաքննադատությունը որպես թերությունների դեմ մղվող պայքարի մեթոդ» թեմայով, քաղկոմի բյուրոյի նիստում քննարկել Հայկական ՍՍՀ դատախազության կուսբյուրոյի հաշվետվությունը՝ կուսժողովների նախապատրաստման ու անցկացման, դրանցում կոմունիստների ակտիվ մասնակցությունն ապահովելու մասին:

Կուսշրջկոմներին հանձնարարված է ուսումնասիրել աշխատավորների դիմումներին ու բողոքներին ընթացք տալու վիճակը, նրանց առաջարկությունները ձեռնարկությունների և սպասարկման ոլորտի կազմակերպությունների գործունեությունը բարելավելու վերաբերյալ:

Քաղկոմը մշակել է նաև այլ միջոցառումներ, որոնք ուղղված են կուսակցական, սովետական, տնտեսական բոլոր օղակներում թերությունների վերացման, գործերի բարելավման փորձված մեթոդի՝ քննադատության և ինքնաքննադատության լայն ծավալմանը:

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ

**Գ. Հ. ՄԿՐՏՉՅԱՆ**
**ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության մեքենայացման և էլեկտրիֆիկացման գլխավոր վարչության պետի տեղակալ**

*ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆ ու սովետական կառավարությունը մեծ ուշադրություն են նվիրում գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդմանը։ Ձեռնարկվում են բոլոր միջոցները, որպեսզի կոլտնտեսությունների և սովխոզների արտադրությունն իր տեխնիկական հագեցվածությամբ ետ չմնա սոցիալիստական ինդուստրիայից։*

*Սովետական Հայաստանի կոլտնտեսություններում և սովխոզներում այժմ կան 9.600 տրակտոր, 8.500 բեռնատար ավտոմեքենա, 1.480 հացահատիկային կոմբայն, 5.200 տարբեր նշանակության գութան, 2.300 շարքացան, 2.400 կուլտիվատոր և բազմաթիվ այլ գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ։*

*Մեր հանրապետության մշակվող հողատարածությունների (վարելահող և բազմամյա տնկարքներ) 82 տոկոսը ծովի մակերևույթից 1.000 մետր բարձրության վրա է, իսկ մի զգալի մասը՝ նույնիսկ 1.500 մետրից էլ բարձր։ Հանրապետության տերիտորիայի 29,3 տոկոսն ունի 5 աստիճան թեքություն, 5—12 աստիճան թեքության վրա են գտնվում ողջ տարածության դարձյալ 29,3 տոկոսը, իսկ 12-ից բարձր թեքությունների վրա՝ 41,4 տոկոսը։*

*Վարելահողերի միջին տարածությունը 3 հեկտար է, իսկ լեռնային շրջաններում՝ շատ ավելի փոքր։ Գյուղատնտեսության համար օգտագործվող հողատարածությունների 40 տոկոսը քարքարոտ է։ Հանրապետության բնատնտեսական պայմանների բազմազանությունը մեծ չափով ազդում է գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործման և մեքենաներին ու դրանց համակարգին առաջադրվող պահանջների դիֆերենցացման վրա։ Որպես կանոն մեր հանրապետությունում տնտեսությունները մեծ մասամբ փոքր են և փոքր հողատարածությունների վրա մշակում են գյուղատնտեսական տարբեր կուլտուրաներ, միաժամանակ զբաղվում անասնապահությամբ։ Այս ամենն ստիպում է տնտեսություններին ունենալ տարբեր տիպի տրակտորներ և գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ, որոնք նախատեսված են աշխատելու մինչև 10—12 աստիճան թեքությունների վրա։*

*Թեքսարալանջային տրակտորների և համապատասխան այլ մեքենաների բացակայության հետևանքով գյուղատնտեսական աշխատանքները կատար-*



*վում են սովորական տրակտորներով, որոնց արտադրողականությունը մեր հանրապետությունում ցածր է։ Իսկ արագընթաց և լայն ընդգրկման ագրեգատներ մեր հողատարածություններում հնարավոր չէ օգտագործել։ Այս հանգամանքը ստիպում էր առավելագույն չափով հոգալ գյուղատնտեսական արտադրության էներգազինվածության բարձրացման մասին։ Եվ, իրոք, եթե 1970 թ. յուրաքանչյուր 100 հեկտար վարելահողին ընկնում էր 280 ձիաուժ հզորություն, ապա 1974 թ. այն հասել է 342-ի։ Յուրաքանչյուր մեկ բանվորի էներգազինվածությունը 1970 թ. կազմել է 6,8 ձիաուժ, իսկ 1974 թ.՝ 9,3։*

*Տարեցտարի ավելանում է տրակտորային աշխատանքների ծավալը և տրանսպորտային միջոցների բեռնաշրջանառությունը։ 1970 թ. կատարվել է 3,35 մլն հեկտար պայմանական վար, իսկ 1974 թ.՝ 5,3 մլն հեկտար էտալոնային պայմանական վար, բեռնաշրջանառությունը կազմել է 290 մլն տ/կմ։*

*Էներգազինվածության աճը հնարավորություն ընձեռեց զգալի չափով կրճատելու գյուղատնտեսական աշխատանքների կատարման ագրոտեխնիկական ժամկետները, բարձրացնելու գյուղատնտեսական կուլտուրաների մշակության և անասնապահության արտադրապրոցեսների մեքենայացման աստիճանը։ Էներգազինվածության աճին զուգընթաց բարձրացել են նաև մեքենա-տրակտորային պարկի շահագործման ցուցանիշները։*

*Քանի որ «էտալոնային տրակտոր», «էտալոնային պայմանական վար» միավորները գյուղատնտեսության մեջ կիրառվել են 1972 թվականից, ուստի, համեմատենք 1972—1974 թթ. համապատասխան ցուցանիշները։ 1972 թ. մեկ պայմանական էտալոնային տրակտորի հերթափոխային արտադրողականությունը կազմել է 3,7, իսկ 1974 թ.՝ 4,5 հեկտար պայմանական էտալոնային վար։ Տարեկան արտադրողականությունը համապատասխանաբար եղել է 720 և 750 հեկտար։ Մեկ հեկտար պայմանական էտալոնային վարի վրա 1972 թ. ծախսվել է 11,1 կգ վառելիք, իսկ 1974 թ.՝ 10,2։ Մեր հանրապետությունում կան բազմաթիվ տնտեսություններ, որոնք, լրիվ կարողությամբ օգտագործելով գյուղատնտեսական մեքենաները, ավելի բարձր ցուցանիշների են հասել։ Այսպես, Նոյեմբերյանի շրջանի Ձեյթունի սովխոզում մեկ էտալոնային տրակտորի հերթափոխային արտադրողականությունը կազմել է 7,7 հեկտար, տարեկան արտադրողականությունը՝ 1.115 հեկտար պայմանական վար, իսկ մեկ հեկտարի համար ծախսվել է 9,2 կգ վառելիք։ Կալինինոյի շրջանի Շահնազարի սովխոզում նշված ցուցանիշները համապատասխանաբար կազմել են՝ 8,0 և 1.149 հեկտար ու 10 կգ, Արտաշատի շրջանի Փարիզյան կոմունայի անվան կոլտնտեսությունում՝ 6,1 և 928 հեկտար ու 8 կգ։ Սա գյուղատնտեսական տեխնիկայի լավ խնամքի և մեքենաների կարողությունների արդյունավետ օգտագործման արդյունք է։*

*Խաղողի այգիները մեքենաներով մշակելու առավելությունները ցույց տալու համար բերենք այսպիսի օրինակ։ Մեկ հեկտար այգի թաղելու համար ձեռքի աշխատանքի դեպքում ծախսվում է 121 ռուբլի, իսկ բացելու համար՝ 36 ռուբլի։ Նույն աշխատանքները մեքենաներով կատարելու դեպքում յուրաքանչյուր հեկտարի (թե՛ թաղելու, թե՛ բացելու) համար ծախսվում է 2 ռ. 59 կոպեկ։*

*Սակայն մեր հանրապետությունում, ընդհանուր առմամբ, գյուղատնտեսական մեքենաները դեռևս լրիվ կարողությամբ չեն օգտագործվում։ Կան այնպիսի տնտեսություններ, որոնցում մեկ էտալոնային տրակտորի տարեկան արտադրողականությունը չի անցնում 500 հեկտար պայմանական վարից, իսկ հերթափոխային արտադրողականությունը ցածր է 4 հեկտարից։ Այդպիսի տնտեսություններից են Թալինի շրջանի Դավթաշենի, Աշտարակի շրջանի Նագրրվան գյուղի կոլտնտեսությունները։*

*ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ գործակցի բարձրացումը հույժ կարևոր է դառնում հատկապես այժմ, երբ արդյունաբերությունը հետզհետե ավելի է մեծացնում գյուղատնտեսության համար թողարկվող մեքենաների հզորությունը։*

*Ուստի, ի՞նչ է անհրաժեշտ ձեռնարկել մեր հանրապետության լեռնային*

երկրագործության պայմաններում մեքենա-տրակտորային պարկն ավելի արդյունավետ օգտագործելու համար։ Խոպանի յուրացման 20-ամյակի առթիվ Ալմա-Աթայում կայացած հանդիսավոր նիստում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Նյութատեխնիկական բազայի ամրապնդման շնորհիվ գյուղատնտեսությունը թևակոխում է զարգացման նոր փուլ, ավելի ու ավելի մեծ չափով է փոխադրվում ինդուստրիալ հիմքի վրա։ Արտադրամասերի մեջ կատարվող այս որակական տեղաշարժը, իր հերթին, պահանջում է արտադրահարաբերությունների կատարելագործում, հանրայնացման պրոցեսների ուժեղացում, աշխատանքի բաժանում։ Ի՞նչ է նշանակում սա։ Արտադրության բազմաճյուղ, մասնատված կառուցվածքի մինչև օրս պահպանված գծերը, որոնք ժառանգվել են անցյալից, կասեցնում են գիտատեխնիկական վերափոխման պրոցեսը, արգելակում գյուղատնտեսության ինտենսիվացումը, ուստի, արտադրության հետագա մասնագիտացումն ու համակենտրոնացումը, միջտնտեսական կոոպերացիայի խորացումը ներկայումս երկրի գյուղատնտեսության զարգացման կենսական արմատական հարցերն են դառնում»։

Գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման պայմաններից մեկը այդ արտադրապրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն է, որը մեծ չափով կնպաստի աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Դրա համար հարկավոր է փոքր և բազմաճյուղ տնտեսությունները մասնագիտացնել ու համակենտրոնացնել, որը հնարավորություն կընձեռի ունենալու միայն անհրաժեշտ մեքենաներ։ Այդ միաժամանակ նախադրյալներ կստեղծի լայնորեն մեքենայացնելու արտադրությունը և արմատավորելու մեքենա-օգտագործման բրիգադների ու օղակների աշխատանքի փորձը։ Նման օղակ արդեն ստեղծվել է Սիսիանի շրջանի Բռնակոթ գյուղի կոլտնտեսությունում, Լենինի շքանշանակիր մեխանիզատոր Կ. Խաչատրյանի ղեկավարությամբ։ Նա իր մշակած յուրաքանչյուր հեկտարից անցյալ տարի ստացել է 20 ցենտներ հացահատիկ, երբ շրջանի միջին բերքատվությունը կազմել է 12 ցենտներ։ Խաչատրյանի օղակը պարտավորվել է այս տարի իր մշակած յուրաքանչյուր հեկտարից ստանալ 25 ցենտներ հացահատիկ։ Կալինինոյի շրջանի Կալինինոյի սովխոզի մեխանիզատոր Միխայիլ Պավլովի օղակը մշակել և հավաքել է 40 հեկտար կարտոֆիլ, յուրաքանչյուր հեկտարից ստացել 280 ցենտներ բերք։ Ակնբախ են այս օղակների ցուցանիշները և պետք է ձգտել, որ ամենուրեք կազմակերպվի ու տարածվի նրանց փորձը։ Անհրաժեշտ է որոնել ուղիներ՝ գյուղատնտեսության մեջ լայնորեն ներդնելու նորագույն տեխնիկան ու տեխնոլոգիան, արմատավորելու առաջավորների փորձը։ Օրինակ, մեր հանրապետությունում կերի համար սենաժի պատրաստումը կիրառվում է ընդամենը երեք տարի, բայց դրա պատրաստման տեխնոլոգիական պրոցեսներն արդեն լրիվ մեքենայացված են։ Խաղողագործության մեջ լավ նախաձեռնություն են ցուցաբերում Արտաշատի շրջանի տնտեսությունները, կիրառելով այնպիսի նոր տեխնոլոգիական պրոցեսներ, ինչպիսիք են՝ մեքենայացված այգեթաղը, այգեբացը և միջվաղային տարածությունների մշակումը։ Դա հին թմբային այգիների վերակառուցման և վազերը հենասյուների վրա բարձրացնելու արդյունք է։

Ինչպես նշեց ՀԿԿ Կենտկոմի 1975 թ. հունվարյան պլենումը, հանրապետության գյուղատնտեսական գիտահետազոտական ինստիտուտներն իրենց գիտական ուսումնասիրությունները չեն զուգակցում արտադրության պրակտիկ աշխատանքներին։ Տեխնիկայի արդյունավետ օգտագործման առումով տեղին է նշել, որ ինչպես ողջ հանրապետության, այնպես էլ առանձին գոտիների համար դեռևս մշակված ու հաստատված չեն մեքենա-օգտագործման հիմնական ցուցանիշների նորմաները (հերթափոխային, օրական և տարեկան արտադրողականությունը, պարկի օգտագործման գործակիցը, մեքենայացված աշխատանքների ինքնարժեքը)։ Չկան գյուղատնտեսական մթերքների արտադրության տեխնոլոգիական քարտեր, մեքենա-տրակտորային պարկի օպտիմալ կազմի հաշվարկի մեթոդիկա։ Նշված միջոցառումների իրականացումն



զգալիորեն կնպաստի տեխնիկայի օգտագործման արդյունավետության բարձրացմանը։

Անհրաժեշտ է լայնորեն կիրառել տրակտորների օգտագործման ներտընտեսային մեթոդը, հատկապես կերի, օրգանական և հանքային պարարտանյութերի փոխադրումների ժամանակ։ Մեր կարծիքով պետք է հաշվառման ենթարկել ու վերաբաշխել կամ վերավաճառել տնտեսություններում եղած ավելորդ, չօգտագործվող տեխնիկան՝ տրակտորները, կոմբայնները, ավտոմեքենաները և գյուղատնտեսական այլ մեքենաներ։ Այս ասպարեզում արդեն որոշ գործ արված է։

ՄԵՐ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՈՒՄ ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹՅԱՄԲ ԶԲԱՂՎՈՂ 692 տնտեսություններից մինչև 100 գլուխ կով ունի 97-ը, կամ ամբողջի 14 տոկոսը, 100—300 կով՝ 421-ը, կամ ավելի քան 61 տոկոսը, իսկ 300-ից բարձր՝ 174 տնտեսություն կամ 25 տոկոսը։ Ինչպես երևում է բերված թվերից, հանրապետությունում անասնապահական տնտեսությունների գերակշռող մասը, ավելի ստույգ՝ 75 տոկոսը, ունի փոքր ֆերմաներ, իսկ այդպիսի ֆերմաներում արտադրապրոցեսների կոմպլեքս մեքենայացումը խիստ դժվար է և տնտեսապես ոչ ձեռնտու։ Այդ տնտեսություններում հին տիպային նախագծերով կառուցված անասնապահական շենքերում կոմպլեքս մեքենայացումը կապված է շատ մեծ դժվարությունների հետ, որովհետև ներկայումս արտադրվող մեքենաներն այդ շենքերի չափսերին և դրանցում անասունների խնամքի տեխնոլոգիային չեն համապատասխանում։ Հետևաբար, անասնապահության արտադրապրոցեսների առավելագույն մեքենայացման և այդ մեքենաների շահավետ օգտագործման ու արտադրողականության բարձրացման համար անհրաժեշտ է համակենտրոնացնել անասնապահական մթերքների արտադրությունը՝ ֆերմաներում, համալիրներում և թռչնաֆաբրիկաներում, կիրառելով անասունների ու թռչունների պահպանման առաջավոր արդյունաբերական տեխնոլոգիաներ։

Դրա հետ միասին նպատակահարմար է վերակառուցել հին տիպային նախագծերով ֆերմաները, առաջին հերթին, այն անասնապահական և թռչնապահական շենքերը, որոնք կարող են պիտանի լինել արտադրապրոցեսների կոմպլեքս մեքենայացման համար։ Անհրաժեշտ է, ըստ առանձին կոլտնտեսությունների և սովխոզների, ընտրել վերակառուցման ենթակա ֆերմաները, որոշել կատարվելիք աշխատանքների ծավալը և կազմել դրանց վերակառուցման հերթականության պլան։

Գյուղատնտեսական մեքենաների արդյունավետ օգտագործման կարևոր պայմաններից մեկը դրանց խափանումները ժամանակին վերացնելն է, որակով նորոգելը։ Այս առումով մեծ նշանակություն ունի նորոգման բազաները ժամանակակից տեխնիկայով սարքավորելը։ Պետք է ասել, որ մեր հանրապետությունում վերջին տարիներս որոշակի աշխատանք է կատարվել կոլտնտեսություններում և սովխոզներում տեխնիկայի նորոգման ու տեխնիկական սպասարկման բազաների ստեղծման ասպարեզում։ Այսպես, իններորդ հնգամյակի անցած չորս տարում կառուցվել են նորոգման 44 արհեստանոցներ և վերակառուցվել 33-ը, բացվել են տեխնիկական սպասարկման 9 կետեր։ Ցավոք, այս արհեստանոցներն առայժմ լրիվ կարողությամբ օգտագործել հնարավոր չէ՝ համապատասխան կազմակերպությունների կողմից պահանջվող քանակությամբ հաստոցներ և սարքավորումներ չտրամադրելու պատճառով։

ՎԵՐՋԻՆ ՏԱՐԻՆԵՐՍ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆՈՒՄ լայն տարածում է ստացել մեքենաների և սարքավորումների մասնագիտացված տեխնիկական սպասարկումը՝ վարպետ-կարգավորողների օգնությամբ, որը, սակայն, մեր հանրապետության տնտեսություններում շատ դանդաղ է արմատավորվում։ Տեխնիկական սպասարկման այս ծառայությունը տնտեսություններում պետք է կոմպլեկտավորել բարձր որակավորում ունեցող կադրերով։ Այս ասպարեզում աշխատանքի որոշակի փորձ ունեն Նոյեմբերյանի շրջանի Ջեյթունի և «Հաղթանակ» սովխոզները։ Նրանց մոտ վարպետ կարգավորողներ են աշխատում փորձված մասնագետներ, հմուտ մեխանիզատորներ։ Մասնագիտացված

տեխնիկական սպասարկման շնորհիվ այս տնտեսություններում մեքենաները քիչ պարապուրդներ են տալիս և արդյունավետ են օգտագործվում:

Ներկայումս չկա գյուղատնտեսական արտադրության մի բնագավառ, ուր ներդրված չլինի ժամանակակից տեխնիկան: Միանգամայն տեղին է ասված՝ մեխանիզատորը գյուղում գլխավոր դեմք է: Սա ակնհայտ ճշմարտություն է, բայց, ցավոք, մեր հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում զգալի է մեխանիզատորական կադրերի պակաս: Այսպես, յուրաքանչյուր 100 տրակտորին ընկնում է 87 տրակտորիստ, իսկ Թալինի, Էջմիածնի, Աշտարակի, Եղեգնաձորի, Մասիսի շրջաններում՝ 42—60:

Բերված փաստերը լուրջ մտահոգության տեղիք են տալիս: Գյուղատնտեսության համար մեխանիզատորական կադրեր պատրաստում են հանրապետության ութ շրջաններում գործող պրոֆտեխնիկական ուսումնարանները: Շուտով Սևանի, Նոյեմբերյանի, Շամշադինի, Թալինի և Ստեփանավանի շրջաններում կբացվեն նոր ուսումնարաններ: Բացի այդ, քաղաքային 15 պրոֆտեխուսումնարաններում կան խմբեր գյուղական մեխանիզատորներ պատրաստելու համար: Բայց շրջանային կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինները, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարները լուրջ ուշադրություն չեն նվիրում այդ ուսումնարանները համապատասխան թվով սովորողներով ապահովելուն:

Երիտասարդությանը գյուղի հետ կապելու, նրան գյուղատնտեսական տեխնիկային ծանոթացնելու նպատակով գյուղական 90 միջնակարգ դպրոցներում մտցված է տրակտորների և գյուղատնտեսական տեխնիկայի ուսուցում:

Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը որոշում ընդունեցին գյուղական միջնակարգ պրոֆտեխուսումնարանների ցանցն ընդլայնելու և դրանց աշխատանքը բարելավելու մասին: Տեղական կուսկազմակերպությունների խնդիրն է՝ անշեղորեն կենսագործել կուսակցության Կենտկոմի ու միութենական կառավարության այդ որոշումը:

Անհրաժեշտ է հետևել Միության առաջավոր տնտեսությունների կոչին՝ «Ապրում ես գյուղում—տիրապետի՛ր մեխանիզատորի մասնագիտությանը», այդ կոչի իրականացման և պրոպագանդման գործում ընդգրկել կոմերիտական կազմակերպություններին, տեղական սովետներին, կոլտնտեսությունների և սովխոզների կուսակցական կազմակերպություններին, մամուլը, ռադիոն և հեռուստատեսությունը: Երիտասարդ սերունդն ի վիճակի է լուծելու արդյունաբերական հիմունքներով կազմակերպվող գյուղատնտեսության զարգացման ամենադժվարին խնդիրները: Հարկավոր է միայն անհրաժեշտ պայմաններ ստեղծել բարձրորակ մեխանիզատորներ պատրաստելու համար: Մեխանիզատորական կադրերի պատրաստմանը զուգընթաց պետք է զբաղվել նաև նրանց վերապատրաստման գործով: Անհրաժեշտ է կազմակերպել տնտեսությունների մեխանիզատորների և մասնագետների սեմինար պարապմունքներ՝ նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիական պրոցեսների ուսումնասիրման համար, օգտագործելով հանրապետության առաջավոր տնտեսությունների փորձը:

Գյուղատնտեսության տեխնիկական վերազինումը, տեխնիկան արդյունավետ օգտագործելը, նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիական պրոցեսների լայն ներդրումը պահանջված տեմպով կազմակերպելու համար անհրաժեշտ է գյուղատնտեսությունն ապահովել բարձրագույն կրթությամբ ինժեներ-մեխանիկներով: Երևանի գյուղատնտեսական ինստիտուտի մեքենայացման ֆակուլտետը տարեկան ավարտում են 120—150 ինժեներ-մեխանիկներ, մինչդեռ մեր հանրապետության կոլտնտեսություններից և սովխոզներից միայն 55-ն են ապահովված ինժեներներով, իսկ մնացած տնտեսություններում այդ պաշտոններն զբաղեցրել են պրակտիկ մեխանիկներ և տեխնիկ մեխանիկներ, որոնք միշտ չէ, որ ի վիճակի են իրագործելու վերը նշված խնդիրները: Այս հանգամանքը պետք է լրջորեն մտահոգի համապատասխան կազմակերպություններին:



ՊԵՏԱԿԱՆ ՄԵԾ ԿԱՐԵՎՈՐՈՒԹՅՈՒՆ ՈՒՆԻ տեխնիկայի պահպանումը: Տնտեսություններում եղած տեխնիկայի պահպանման ասպարեզում որոշ աշխատանք կատարվել է արդեն: Այսպես, յուրաքանչյուր տարի այդ նպատակով հայտարարվում է ստուգատես-մրցույթ, որը փաստորեն սոցմրցության նոր ձև է: Առաջնություն շահած տնտեսություններն արժանանում են թանկարժեք պարգևների: 1974 թ. մրցույթին մասնակցեցին 13 շրջանների 82 տնտեսություններ, որոնցից առաջին երեք տեղերը համապատասխանաբար շնորհվեցին Արտաշատի շրջանի Այգեզարդ գյուղի կոլտնտեսությանը, Նոյեմբերյանի շրջանի «Հաղթանակ» և Կամոյի շրջանի Բատիկյանի սովխոզներին:

Սակայն մեզ մոտ դեռևս կան տնտեսություններ, որտեղ վատ խնամքի պատճառով շատ մեքենաներ ժամանակից շուտ են դուրս գրվում:

Ինչպես հայտնի է, ոչ բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզներն են, որ ապահովված են մեքենաների պահպանման շենքերով և ծածկոցներով: Տնտեսությունների մեծամասնությունը մեքենաները կանգնեցնում է բացօթյա հրապարակներում: Տեխնիկան փչացումից, հատկապես կոռոզիայից պահպանելու համար անհրաժեշտ է ունենալ կոշտ ծածկույթով հրապարակ, մեքենաների վրայից հանվող և պահվող մասերի ու հանգույցների պահեստ, դուրսգրման ենթակա և դուրսգրված տեխնիկայի, մեքենաների լվացման հրապարակներ, ամբարձիչ մեխանիզմներ և տակդիրներ, հակահրդեհային միջոցներ և այլ հարմարություններ: Ստանդարտով պահանջվող նման հրապարակներ ի վիճակի է պատրաստել յուրաքանչյուր տնտեսություն:

Այժմ, երբ մեր հանրապետությունում հիմնականում ավարտված են գարնան գյուղատնտեսական աշխատանքները, և մենք թևակոխել ենք գյուղատնտեսության համար առավել պատասխանատու՝ ցանքատարածությունների մշակման, բերքահավաքի նախապատրաստման ժամանակաշրջանը, գյուղի մեխանիզատորների առջև մեծ ու պատասխանատու խնդիրներ են դրված: Դրանց անթերի լուծումը պահանջում է արդյունավետ օգտագործել գյուղատնտեսական տեխնիկան:

Բարձր բերքով ավարտենք հնգամյակի եզրափակիչ տարին՝ այս պետք է լինի յուրաքանչյուրի նշանաբանը:

որոշակի պայմանների (տվյալ օգտակար հանածոյի նկատմամբ ժողովրդատնտեսական պահանջարկի, հումքային բազան ընդլայնելու հնարավորության, աշխատանքային, նյութական և ֆինանսական ռեսուրսների առկայության և այլն) փոփոխությանը զուգընթաց անհրաժեշտորեն պետք է վերանայվեն։ Որոշակի ժամանակի ընթացքում այդ նորմատիվների մեծության վրա ազդող գործոնների քանակական փոփոխությունները պատճառ են դառնում ընդերքի հարստությունների ոչ ռացիոնալ օգտագործման։ Այսպես, Ջեզկազգանի պղնձի հանքավայրի (Ղազախական ՍՍՀ-ում) վերագնահատման ժամանակ պարզվեց, որ արդյունահանվող հանքանյութի շուրջ մեկ քառորդը, որը կարելի էր վերամշակել, տարիներ շարունակ դեն էր շպրտվում որպես կոնդիցիաներին չհամապատասխանող հանքանյութ (Дайрбеков Ж. О., «Проблемы эффективной и рациональной разработки рудных месторождений Казахстана», Изд-во «Наука», Каз. ССР, Алма-Ата, 1974 г., стр. 211, 248)։

Ցավոք, այս օրինակը բացառություն չէ։ Ներկայումս ինչպես Միության, այնպես էլ մեր հանրապետության տարածքում շահագործվող մի շարք հանքավայրերում որպես թափոն դեն է նետվում այնպիսի որակի հանքանյութ, որի օգտագործման տնտեսական արդյունավետությունը կասկած չի հարուցում։ Այս ամենը անհրաժեշտորեն պահանջում է **պարբերաբար, ոչ ուշ, քան 6—8 տարին մեկ, վերանայել ընդերքի հարստությունների շահագործման տարիներ առաջ սահմանված նորմատիվները։**

Բնական ռեսուրսների անվերադարձ կորուստների հետևանքով մի կողմից կրճատվում են լեռնահանքային արդյունաբերության հումքային բազան և լեռնա-արդյունահանող ձեռնարկության գոյատևությունը, իսկ մյուս կողմից՝ շրջանցվում ձեռնարկությունների տնտեսական շահերը և վատնվում ժողովրդա-տնտեսական միջոցներ։ Անկասկած, արդյունահանման ամեն մի եղանակի և սիստեմի դեպքում օգտակար հանածոների կորուստներն անխուսափելի են։ Խոսքն այստեղ այնպիսի կորուստների մասին է, որոնց կրճատումը ո՛չ միայն հնարավոր է, այլև խիստ անհրաժեշտ։

Օգտակար հանածոների անվերադարձ կորուստների կրճատման գործում մեծ է հանքանյութի արդյունահանման և վերամշակման տեխնոլոգիայի կատարելագործման դերը։ Սակայն, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, միայն այդ ճանապարհով հնարավոր չէ ամբողջությամբ և սպառիչ լուծել ընդերքի հարստությունների համալիր օգտագործման պրոբլեմը։ Հաճախ տեխնիկական նոր միջոցների կիրառման շնորհիվ առավել խոշոր մասշտաբներով հանքանյութի արդյունահանման հնարավորության մեծացումը երկրորդական պլան է մղում արդյունահանվող հանքաքարի որակի և դրա առավել լրիվ օգտագործման ուղիների որոնումը։ Այսպիսի պայմաններում մետաղների և այլ օգտակար հանածոների նկատմամբ ժողովրդա-տնտեսական պահանջարկը հիմնականում բավարարվում է էքստենսիվ ուղիով՝ շահագործվող հանքավայրերից հանքանյութի արդյունահանման ծավալի ավելացման կամ նոր հանքավայրերը արտադրական ոլորտ ներգրավելու միջոցով։ Այս դեպքում շրջանցվում են արդյունահանված հանքանյութի առավել լրիվ և համակողմանի օգտագործմամբ վերջնական արտադրանքի ավելացման հնարավորությունները։

ԸՆԴԵՐՔԻ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ ԲԱՐԵԼԱՎԵԼՈՒ ասպարեզում շոշափելի արդյունքների կարելի է հասնել միայն այն դեպքում, երբ օրենսդրական ու վարչական միջոցառումները զուգակցվեն տնտեսական լծակների խելացի գործադրման հետ։

Տարիների փորձը ցույց է տալիս, որ ընդերքի հարստություններն արդյունահանելու ու վերամշակելու ընթացքում հանքանյութի համալիր օգտագործման պլանավորման, հաշվառման և գնահատման գործող կարգը բնավ անթերի չէ։ Այն նույնիսկ որոշ չափով խոչընդոտում է հանքային հումքն առավել լրիվ և համակողմանի օգտագործելուն։ Դա հետևանք է արդյունահանող ձեռնարկություններում արտադրական պլանների կատարողականի գնահատման



այն կարգի, երբ որպես գնահատման ցուցանիշ ընդունվում է ընդերքից արդյունահանված հանքանյութի քանակը՝ առանց հաշվի առնելու օգտակար բաղադրիչներով դրա հագեցածության և արդյունահանելիս հանքանյութի աղքատացման աստիճանը։ Որպես հետևանք, ձեռնարկությունները, հատկապես երբ դրանք կոմբինավորված չեն վերամշակող համապատասխան հարստացուցիչ ֆաբրիկաների հետ, շահագրգռություն չեն դրսևորում արդյունահանվող հանքանյութի որակի բարձրացման գործում։ Երբեմն հանքանյութի արդյունահանման պլանը կատարելու համար դրան է խառնվում և վերամշակելու կամ օգտագործելու ուղարկվում կոնդիցիային չհամապատասխանող հանքանյութ, նույնիսկ շրջապատի հանքազուրկ ապարներ։ Դրա պատճառով հարստացուցիչ ֆաբրիկաներում վերամշակվում է առավել ցածրորակ հանքաքար։ Հետևանքը լինում է այն, որ մի կողմից վատնվում են աշխատանքային և նյութական հսկայական միջոցները, մյուս կողմից զգալիորեն նվազում է հանքանյութից օգտակար բաղադրիչի կորզման աստիճանը և մեծանում անվերադարձ կորուստները։

Ճիշտ է, հանքանյութի որակով պայմանավորված մեծածախ գների տարբերակումը կոչված է կանխելու նման անցանկալի երևույթը, սակայն, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, տնտեսական այդ լծակը, մյուսներից մեկուսացված, ամբողջությամբ չի լուծում ընդերքի հարստությունների ռացիոնալ օգտագործման պրոբլեմը։

Դրան հակառակ, այնտեղ, ուր ընդերքից հանքանյութի արդյունահանումը և դրա հետագա վերամշակումը կենտրոնացված է մի ձեռնարկության՝ կոմբինատի շրջանակներում, շատ հաճախ նկատվում է մեկ այլ միտում։ Այդ կոմբինատներում, ուր դրանց արտադրա-տնտեսական գործունեության գնահատման հիմնական ցուցանիշներից մեկը թողարկվող վերջնական արտադրանքի՝ օգտակար բաղադրիչների խտանյութերի (կոնցենտրատների) արտադրության պլանի կատարումն է, հանքավայրերը երբեմն շահագործվում են «ընտրական» սկզբունքով։ Այս դեպքում արդեն օգտակար բաղադրիչների խտանյութերի թողարկման պլանի և տեխնիկա-տնտեսական մյուս ցուցանիշների կատարումը կոմբինատները ձգտում են ապահովել հանքավայրերի առավել հարուստ տեղամասերը մշակելու և այդ տեղամասերից արդյունահանված հանքաքարը վերամշակելու միջոցով։

Հայաստանի ընդերքի հանքային հարստությունների շահագործման բնագավառում տեղ գտած թերությունները վերացնելու նպատակով ՀՍՍՀ Մինիստրների սովետը դեռևս 1970 թ. հոկտեմբերին ընդունեց որոշում՝ գունավոր մետալուրգիայի լեռնահանքային ձեռնարկություններում հանքաքարի արդյունահանման ժամանակ կորուստներն ու աղքատացումը պակասեցնելու և վերամշակելիս մետաղների կորզումն ավելացնելու միջոցառումների մասին։ Չնայած այդ որոշումն ընդունելուց անցել է հինգ տարի, սակայն նախատեսված մի շարք միջոցառումներ կամ անուշադրության են մատնված, կամ իրագործվում են չափազանց դանդաղ (օրինակ՝ առանձին լեռնահանքային ձեռնարկությունների հարստացուցիչ ֆաբրիկաներում մետաղների փաստացի կորզումը մինչև սահմանված նախագծային նորմաներին հասցնելը, կորուստների և աղքատացման հաշվառման մեթոդների կատարելագործումը և այլն)։

Ստեղծված վիճակի հիմնական պատճառներից մեկն էլ պետք է համարել հանքային հումքի գնահատման այնպիսի սիստեմի բացակայությունը, որն արդյունահանող ձեռնարկություններին տնտեսապես կախման մեջ կդնի ընդերքի հարստությունների օգտագործման ինտենսիվությունից։ Այս առումով ընդերքի հարստությունների տնտեսական գնահատումը, մեր կարծիքով, պետք է հետամտի հետևյալ հիմնական նպատակները։ Նախ, բնական ռեսուրսներն արտադրական ոլորտ ներգրավելու նպատակահարմարությունը որոշելիս և ճիշտ հերթականությունը սահմանելիս այն պետք է հանդես գա կարգավորիչի դերում։ Երկրորդ, առավելագույն չափով պետք է նպաստի ընդերքի ռացիոնալ օգտագործմանը։ Երրորդ, նույն հանքատեսակի բնական ու աշխարհագրական տարբեր պայմաններում գտնվող հանքավայրեր շահագործելիս հանքանյութն

արդյունահանող ու վերամշակող ձեռնարկությունների համար պետք է ապահովի տնտեսապես հավասար պայմաններ: Չորրորդ, հաշվի առնելով ժողովրդական տնտեսության մեջ մի հանքատեսակը մեկ ուրիշով փոխարինելու հնարավորությունը, պետք է ապահովի այդպիսի բազմազանությունից օպտիմալ տարբերակի ճիշտ ընտրությունը:

ԸՆԴԵՐՔԻ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳՆԱՀԱՏՄԱՆ ՆՊԱՏԱԿՈՎ առաջադրվող այս խնդիրների լուծումը կարելի է իրականացնել միայն տնտեսական գնահատման ցուցանիշների համակարգի օգնությամբ, հաշվի առնելով նաև ընդերքում հանքանյութի բացարձակ և համեմատական գնահատումները:

Ընդերքի հարստությունների բացարձակ գնահատումը կարելի է կատարել ընդերքում հանքանյութի տեսակների համար գներ սահմանելու միջոցով: Այդ գները հնարավորություն կընձեռեն արդյունահանող ձեռնարկություններում արտադրական բոլոր ռեսուրսները, այդ թվում և օգտակար հանածոների հետախուզված պաշարները գնահատել արժեքային արտահայտությամբ և դրանց ծախսումներն արտացոլել թողարկվող արտադրանքի ինքնարժեքում: Այս դեպքում ընդերքի հարստությունների օգտագործման բարելավումը իսկապես կդառնա այդ ձեռնարկություններում արտադրության արդյունավետությունը բարձրացնելու կարևորագույն գործոն և մեծապես կնպաստի ընդհանուր ժողովրդա-տնտեսական և ձեռնարկությունների լոկալ շահերի մերձեցմանը: Միաժամանակ, հաշվի առնելով միևնույն հանքանյութի հանքավայրերի բնաաշխարհագրական պայմանների տարբերությունները, այդ գները պետք է տնտեսապես հավասար իրավիճակ ապահովեն արդյունահանող ձեռնարկությունների համար: Օգտակար հանածոների հարստությունները գնահատելիս այս խնդիրները կարելի է լուծել ընդերքում ռեսուրսների համար համապատասխան մեծածախ և հաշվարկային գներ սահմանելու միջոցով: Այդ գներից յուրաքանչյուրը պետք է ծառայի առաջադրված կոնկրետ խնդիրը լուծելու նպատակին: Հետևապես, դրանց կիրառման ոլորտները պետք է սահմանափակվեն որոշակի շրջանակներում:

Ռեսուրսների համար սահմանվելիք մեծածախ գների հիմքում պետք է ընկած լինեն այդ ռեսուրսների հայտնաբերման երկրաբանա-հետախուզական աշխատանքների վրա կատարված լրիվ ծախսումները և լեռնային դիֆերենցիալ եկամուտը այն չափով, որչափով այն կառաջանա վատթարագույնի համեմատ բնաաշխարհագրական միջինացված պայմաններում գտնվող հանքավայրերը շահագործելիս: Այսպիսի մեծածախ գները հնարավորություն կընձեռեն ամբողջ երկրի կամ տնտեսական շրջանի մասշտաբով ընդերքի հարստությունները գնահատել արժեքային արտահայտությամբ և դրանք հաշվի առնել երկրի ազգային հարստության հաշվարկներում: Ընդերքի հարստությունների այսպիսի գնահատումը հնարավոր կդարձնի հեռանկարային պլաններում սահմանել ժողովրդական տնտեսության, այդ թվում արդյունահանող ու վերամշակող ճյուղերի զարգացման առավել ռեալ տեմպեր և համամասնություններ:

Բնաաշխարհագրական տարբեր պայմաններում գտնվող հանքավայրերը շահագործելիս ընդերքում հանքային հումքի համար միասնական գների կիրառման դեպքում լեռնահանքային ձեռնարկությունները կգտնվեն տնտեսապես անհավասար պայմաններում: Այսպես, առավել բարենպաստ բնաաշխարհագրական պայմաններում գտնվող հանքավայրերը շահագործելիս, երբ արդյունահանվող հանքանյութը գնահատվում է միջին պայմանների համար սահմանված գներով, լեռնահանքային ձեռնարկությունների շահույթը բարձր սահմանված գների հաշվին արհեստականորեն կմեծանա: Մյուս կողմից, խիստ անբարենպաստ պայմաններում գտնվող հանքավայրերից հանքանյութ արդյունահանելիս, առանց որի հնարավոր չէ ծածկել տվյալ հանքատեսակի նկատմամբ ժողովրդա-տնտեսական պահանջարկը, արդյունահանող ձեռնարկությունների մի զգալի մասը կդառնա «վնասաբեր» կամ նվազ շահութաբեր:

Այսպիսով, ընդերքում հանքանյութի համար սահմանվող միասնական մեծածախ գների կիրառումը դառնում է սահմանափակ: Այն կարելի է օգտա-



գործել ազգային հարստության մեջ ընդերքի հարստությունները հաշվառելու, երկրաբանա-հետախուզական աշխատանքների ընդլայնված վերարտադրությունն ապահովելու և այլ նպատակներով: Իսկ արդյունահանող ձեռնարկությունները ընդերքի հարստությունների շահագործման համար պետք է վճարեն՝ ելնելով հանքանյութի հաշվարկային գներից: Ընդերքում հարստությունների գնահատման այդպիսի հաշվարկային գները կոչված են հնարավորության սահմաններում տնտեսական հավասար պայմաններ ստեղծելու տարբեր որակի հանքային հումք օգտագործող ձեռնարկությունների համար: Մարքսը գրում էր. «...իրերի մեջ պարունակված բոլոր տարբեր օգտակար աշխատանքների գումարը դուրս գրելուց հետո միշտ մնում է մի որոշ նյութական սուբստրատ, որ գոյություն ունի բնությունից, առանց մարդու որևէ աջակցության» (Կապիտալ, հ. 1, Երևան, 1954, էջ 49): Արդյունահանող ձեռնարկություններից յուրաքանչյուրի թողարկած արտադրանքում աշխատանքային ծախսումների և այդ «նյութական սուբստրատի» տարբեր փոխհարաբերություններն էլ հենց պայմանավորում են աշխատանքի տարբեր արտադրողականություն, որը, վերջին հաշվով, արտացոլվում է լեռնահանքային դիֆերենցիալ եկամտի մեջ:

Հաշվարկային գներ սահմանելիս բնական ու աշխարհագրական առանձին գործոնների (ընդերքում հանքանյութի ունեցած տեսքի ու տեղադիրքի, օգտակար բաղադրիչների պարունակության, հանքանյութը շրջափակող ապարների կարծրության, հանքավայրի աշխարհագրական պայմանների և այլն) ազդեցությունը կարելի է հաշվի առնել ներկայումս շահագործվող, ինչպես նաև մանրամասն հետախուզված հանքավայրերի հարուստ նյութերի հիման վրա, երկկողմանի կամ բազմակի կոռելյացիոն կապերի միջոցով:

Նոր հանքավայրերի երկրաբանա-տնտեսական գնահատման, օգտակար հանածոների պաշարների հաշվարկման և դրանց ժողովրդա-տնտեսական նշանակության բացահայտման համար անհրաժեշտ է որոշել հանքային հումքի կոնդիցիաները (օգտակար բաղադրիչների եզրագծային և միջին պարունակությունը, հանքային մարմնի նվազագույն հզորությունը և այլն), որոնց հաշվարկների հիմքում ներկայումս դրվում են հանքային հումքի համապատասխան գնացուցակներով սահմանված մեծածախ գները: Այդ գները գերազանցապես արտացոլում են հանքանյութի միավորին ընկնող արդյունահանման և վերամշակման միջին ճյուղային կամ զոնալ ծախսումները: Այդ իսկ պատճառով դրանց օգնությամբ հանքային հումքի կոնդիցիաները հաշվարկելիս ընդերքում օգտակար հանածոների կուտակումների մի մասը, որպես արդյունահանման համար ոչ ձեռնտու հանքանյութ, նախօրոք, արհեստականորեն խոտանվում է: Իրականում, մի շարք շահագործվող հանքավայրերից (որոնք գտնվում են բնաաշխարհագրական խիստ անբարենպաստ պայմաններում) տվյալ հանքատեսակի արդյունահանմանը համեմատ «խոտանված» այդ հանքանյութի մի զգալի մասը կարելի է շահագործել առավել մեծ արդյունավետությամբ: Այսինքն, հանքավայրերի տնտեսական գնահատման ժամանակ գնացուցակային մեծածախ գները օգտագործելու դեպքում, ինչպես ներկայումս դա արվում է գործնականում, հանքային հումքի այնպիսի կուտակումներ, որոնք այլ հանքավայրերում օգտագործվում են, նախապես դառնում են արտաբալանսային, դրանց օգտագործումը համարվում է անարդյունավետ:

Ասվածից հետևում է, որ գործող գնացուցակային մեծածախ գների կիրառումը հանգեցնում է այնպիսի հետևանքների, երբ ստացված արդյունքները ավելի շատ խոչընդոտում, քան օժանդակում են ընդերքի հարստությունների առավել լրիվ և ռացիոնալ օգտագործման պրոբլեմի լուծմանը:

Այսպիսի անցանկալի հետևանքներից խուսափելու համար նոր հանքավայրերում հումքի պաշարները որոշելիս և արտադրական ոլորտում դրանք ընդգրկելու հերթականությունը պարզելու հաշվարկներում ներկայումս գործող մեծածախ գների փոխարեն առավել նպատակահարմար է օգտագործել հանքային հումքի շահագործման թույլատրելի «սահմանային ծախսումները»: Դրանք այն ծախսումներն են, որոնք կատարվում են բնաաշխարհագրական

վատթարագույն պայմաններում գտնվող հանքավայրերից տվյալ հանքատեսակը արդյունահանելիս։ Այսպիսի մոտեցման դեպքում հաշվարկների հիմքում պետք է դրվեն այն հիմնական սկզբունքները, որոնք հանձնարարվում են ՍՍՀՄ ԳԱ տնտեսագիտական-մաթեմատիկական ինստիտուտի կողմից բնության օգտագործման օպտիմալացման պրոբլեմները լուծելու համար («Экономические проблемы оптимизации природопользования», Изд-во «Наука», М., 1973 г., стр. 35—53)։ Ընդերքի հարստությունները գնահատելիս «սահմանային ծախսումների» օգնությամբ հնարավոր է ընդերքի օպտիմալ օգտագործման հետ մեկտեղ ժողովրդական տնտեսությանն ապահովել հանքային հումքի տվյալ տեսակի հուսալի բազայով։

Այդպիսի «սահմանային ծախսումների» փոխարեն հանքավայրերի տնտեսական գնահատման ժամանակ կարելի է օգտագործել նաև ընդերքում հանքային հումքի համար առաջարկվող հաշվարկային գներից ամենաբարձրը։ Այն ևս արտացոլում է հանքանյութի արդյունահանման և վերամշակման այն ծախսումները, որոնք կատարվում են բնաաշխարհագրական վատթարագույն պայմաններում գտնվող հանքավայրերից տվյալ հանքատեսակը արդյունահանելիս։

Սոցիալիզմի պայմաններում կան բոլոր օբյեկտիվ հիմքերը ընդերքի հարստությունների ռացիոնալ օգտագործման հիմնավոր տնտեսական քաղաքականություն վարելու համար։ Այդպիսի քաղաքականությունը, հիմնված լինելով ընդերքի հարստությունների հետագա բարելավումը խթանող տնտեսական լծակների վրա, կնպաստի մեր երկրի տարածքում արտադրուժերի ճիշտ տեղաբաշխմանը և հասարակական արտադրության արդյունավետության բարձրացմանը։



# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵԱԼԻԶՄԻ ՍԿԶԲՆԱՎՈՐՄԱՆ ՊԱՏՄԱՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՀԻՄՔԵՐԸ

Հ. Գ. ՂԱԶԱՐՅԱՆ

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵԱԼԻԶՄԻ ՍԿԶԲՆԱՎՈՐՄԱՆ, էության ու առանձնահատկությունների մասին գրվել են տասնյակ արժեքավոր աշխատություններ, ստեղծվել է սոցիալիստական ռեալիզմի տեսության մի ամբողջ համակարգ։ Եվ, այնուամենայնիվ, սոցիալիստական ռեալիզմի շատ խնդիրներ տակավին կարիք ունեն մեթոդական, մեթոդաբանական մշակման, շատ խնդիրներ տակավին չեն ստացել խոր ու բազմակողմանի լուսաբանություն։

Սոցիալիստական ռեալիզմը բացառապես պատմա-հասարակական զարգացման արդյունք է, գրական օրինաչափ երևույթ, ռեալիզմի նոր որակ՝ պրոլետարիատի հեղափոխական պայքարի, սոցիալիստական հեղափոխության, սոցիալիստական իրականության արտացոլում։ Բուրժուական արվեստաբանները, սակայն, ամբողջովին մերժում են այն՝ իբրև ստեղծագործական նոր մեթոդ։ Նրանք պնդում են, թե սոցիալիստական ռեալիզմը ծագել է ոչ թե գրական հողի վրա, այլ ձևակերպվել ու թելադրվել է կուսակցության կողմից (տե՛ս Литература и современность, сб. 7, М., 1967, стр. 7)։

Նման դատողություններն իրենց հիմքում, անտարակույս, ունեն գրական-գեղագիտական, քաղաքական-փիլիսոփայական կոնցեպցիաներ։ Գեղագիտության, փիլիսոփայության մարզում վաղուց ի վեր վիճարկվում են արմատական այն հարցերը, թե մարդն արդյոք ի վիճակի՞ է ճանաչելու իրական աշխարհը, բացահայտելու դրա օրինաչափությունները. մարդու պատկերացումներն աշխարհի վերաբերյալ կարո՞ղ են տալ իրականության ճշմարիտ պատկերը։

Աշխարհն ինքնակա է և ճանաչելի, հոգևոր կյանքը՝ ածանցյալ, որոշողը կեցությունն է, պնդում են մատերիալիստները։ Աշխարհը խորհրդավոր է, անիմանալի, հոգեկանին ենթակա, պնդում են իդեալիստները. «...Հոգեկանը, այսինքն՝ գիտակցությունը, մտապատկերը, զգայությունը և այլն,— գրում էր Լենինը,— վերցվում է որպես անմիջականը, իսկ ֆիզիկականը մակաբերվում է նրանից, ընդարկվում է նրան։ Աշխարհը մեր Ես-ի ստեղծած ոչ Ես-ն է,— ասում էր Ֆիխտեն։ Աշխարհը բացարձակ իդեա է,— ասում էր Հեգելը։ Աշխարհը կամք է,— ասում էր Շոպենհաուերը։ Աշխարհը հասկացություն է և մտապատկեր,— ասում է իմմանենտ Ռեմկեն։ Գոյը գիտակցություն է,— ասում է իմմանենտ Շուպպեն։ Ֆիզիկականը հոգեկանի ընդարկումն է,— ասում է Բոգդանովը։ Կույր պետք է լինել,— եզրակացնում էր Լենինը,— չտեսնելու համար միատեսակ իդեալիստական էությունը՝ բառական զանազան զգեստների մեջ» (Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ, Ե., 1958, էջ 287)։

Իդեալիստական փիլիսոփայության այդ սպառիչ բնութագիրը վերաբերում է նաև գրական այն դպրոցներին ու դպրոցիկներին, որոնք դրսևորում են էապես իդեալիստական, հետադիմական միտումներ, ինչպես, ասենք՝ դեկադանսը XIX դարի վերջին, մոդեռնիզմը՝ XX դարում, իրենց բոլոր տարատեսակներով:

Հենվելով ենթագիտակցության, մութ բնազդների վրա, աշխարհը դիտելով լոկ իբրև իրենց Ես-ի դրսևորում՝ լի խորհրդավոր, անմեկնելի ուժերով, նրանք՝ դեկադենտները, ինչպես և մոդեռնիստները, մոլորվում են իրենց իսկ ստեղծած երևակայության լաբիրինթոսում և մոլորեցնում աշխատավորական զանգվածներին:

Հուսահատություն, անհեռանկարայնություն, հակում դեպի միստիկան, մարմնի կուլտը, փախուստ հասարակական գործունեությունից: «Սարսափ, վերջապես, ամբողջ կյանքի հանդեպ,— գրում էր մարքսիստ գրականագետ Վորովսկին ռուս դեկադենտների՝ Մ. Արցիբաշևի, Զ. Գիպիուսի, Ն. Կուզմինի, Ֆ. Սոլոգուբի և այլոց մասին,— ուր ամեն ինչ այնպես անիմանալի է ու վայրենի, ուր բանականությունն աղոտանում է մութ կրքերի սանձարձակության առջև, ուր իշխում է անիմաստ պատահականության կամայականությունը» (В. В. Воровский, Литературно-критические статьи, М., 1956, стр. 162):

Այս հատկանիշներն են բնութագրում գրական դեկադանսը:

Անկումային տեսությունները, ասես, խտացված են գերմանացի Օսվալդ Շպենգլերի ռեակցիոն փիլիսոփայության մեջ: Նրա կոնցեպցիայի առանցքը պատմության առաջընթացի բացասումն է, հասարակական զարգացման ֆատալիստական մեկնաբանությունը: «Որքանով խոսքը վերաբերում է մարդկության, այսպես կոչված՝ նպատակին,— ասում է Շպենգլերը քննադատներին ուղղած իր պատասխան խոսքում,— ես սկզբունքային ու վճռական հոռետես եմ, չեմ տեսնում ոչ մի առաջադիմություն, ոչ մի նպատակ, մարդկության համար ոչ մի առանձնահատուկ ուղի» (Освальд Шпенглер и закат Европы, М., 1922, стр. 75):

Հեռու չեն գնում և մոդեռնիստները: Նոբելյան մրցանակակիր, դրամատուրգ Բեկետը չարիքների արմատը տեսնում է հենց մարդու բնության մեջ՝ անմիտ ու ավելորդ համարելով սոցիալական պայքարը, հեղափոխությունը (տե՛ս Ю. Барабаш, Вопросы эстетики и поэтики, М., 1973, стр. 76): Նախամարքսյան մատերիալիստները ևս փակուղու առաջ էին կանգնած: Իրականությունը նրանք դիտում էին լոկ իբրև օբյեկտիվ գործոն, բացառում սուբյեկտը. բացառում էին և գոյություն ունեցող հասարակական հարաբերությունների հեղաշրջման հնարավորությունը:

Այլ է, սակայն, բուն ճշմարտությունը: Եթե հասարակության զարգացումը, իբրև բնապատմական պրոցես, պատմականորեն առաջ բերեց արտադրամիջոցների մասնավոր սեփականություն, դրա հետ՝ աշխատանքի հասարակական այնպիսի բաժանում, որը հակադրվեց մարդուն, օտարվեց նրան, խլեց նրանից անհատականությունը, ապա հասարակության զարգացման նույն բնապատմական պրոցեսը ներհատուկ օրենքների ուժով, անխուսափելիորեն տանում է դեպի կոմունիստական հասարակություն, այսինքն՝ մասնավոր սեփականության ոչնչացում: «...կոմունիստները,— գրում էին Մարքսն ու Էնգելսը,— իրենց թեորիան կարող են արտահայտել մի դրույթով — մասնավոր սեփականության ոչնչացում» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, Ե., 1950, էջ 28):

Մասնավոր սեփականության ոչնչացմամբ էլ, նկատում էր Մարքսը, «մարդը յուրացնում է իր բազմակողմանի էությունը բազմակողմանի ձևով՝ իբրև ամբողջական մարդ» (К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, М., 1956, стр. 591):

XIX դարի երկրորդ կեսը, XX դարը Ռուսաստանում և այլուր, արդարև, հանդիսացան գիտական սոցիալիզմի տեսության տարածման, կենսագործման դար: Մարքսն ու Էնգելսը տակավին 1882-ին ազդարարում էին. «Ռուսաստանը



ներկայացնում է հեղափոխական շարժման առաջավոր ջոկատը Եվրոպայում» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, էջ 4):

90-ական թվականներին Ռուսաստանում խիկ հզորացող հեղափոխական շարժումները Լենինը բնորոշեց իբրև նոր՝ «պրոլետարական փուլ»: Միաժամանակ նա խորապես համոզված էր, որ հեղափոխական իրադրությունը հեղափոխական իրականություն կարող է դառնալ միայն այն դեպքում, երբ ամենաստույգ միջոցներով ու կազմակերպված օգտագործվում են հեղափոխական իրադրության բոլոր միջոցները, երբ իրագործողը խոր տեսությամբ, սոցիալիստական գաղափարախոսությամբ զինված ղեկավար ուժն է՝ հեղափոխական մասսաներին կազմակերպող կուսակցությունը:

Արդեն իսկ 900-ական թվականների սկզբին, Ի՞նչ անել (1902) աշխատությամբ, հեղափոխական պայքարի գաղափարական ուղղվածության հարցը Լենինը դնում էր որոշակի. «...բուրժուակա՞ն, թե սոցիալիստական իդեոլոգիա... սոցիալիստական իդեոլոգիայի ամեն մի նվաստացում, ամեն մի հեռացում նրանից՝ ինքնին նշանակում է բուրժուական իդեոլոգիայի ուժեղացում» (հ. 5, էջ 507):

Հեղափոխական իրադրությունը հեղափոխական իրականություն դարձնելու խնդրում, իբրև սուբյեկտիվ գործոն, վիթխարի դեր ունի նաև գեղարվեստական, հատկապես ռեալիստական գրականությունը, նախ՝ իբրև կյանքը, հեղափոխական շարժումներն արտացոլող, ապա՝ հեղափոխական ուժերը կազմակերպող գաղափարական-էմոցիոնալ հզոր ուժ:

ՌԵԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐՎԵՍՏԸ, ՀՆԱԴԱՐՅԱՆ ԺԱՄԱՆԱԿՆԵՐԻՑ ՍԿՍԱԾ մինչև քաղաքակրթության արշալույսը, մինչև մեր օրերը, հասարակական զարգացմանը զուգընթաց, վերափոխումների, հարստացման ու կատարելագործման երկար ուղի է անցել՝ պարզունակ պատկերից հասնելով մարդկային բարդացված հարաբերությունները ներկայացնող ամենախոր, ամենաբազմանշանակ ընդհանրացումների:

Ռեալիստական պատկերի «նյութական հիմքը» օբյեկտիվ աշխարհն է, օբյեկտիվ աշխարհի ռեալականությունը. «Զգայությունը,— գրում էր Լենինը,— սուբյեկտիվ պատկերն է օբյեկտիվ աշխարհի...» (Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ, էջ 137):

Գրական շարժման պրոցեսում ակնհայտ է, թե ինչպես արագ ծնվում, արագ էլ անհետանում կամ թուլանում են գրական շատ հոսանքներ, ասենք՝ կլասիցիզմը, սիմվոլիզմը, էքսպրեսիոնիզմը: Կյանքի այս կամ այն շրջափուլում արտահայտելով հասարակական որոշ միտումներ՝ դրանք, սակայն, սպառում են իրենց հնարավորությունները և մարում: Մինչդեռ ռեալիզմն անընդհատ հարստանում, կատարելագործվում է՝ ավելի ու ավելի ցայտուն դրսևորելով իր բացահայտ կենսունակությունը: Ռեալիզմը, իբրև ստեղծագործական մեթոդ, հազարավոր թելերով կապված է իրականության հետ, մշտապես սնվում է նրանից:

Այս է ռեալիզմի հավերժ կենսունակության գաղտնիքը:

Ռեալիստ արվեստագետները բացահայտում են պատմական խոր ճշմարտություններ, մինչև իսկ հասնում գիտական հավաստիության: «Որքան էլ տարօրինակ լինի,— գրում էր Լև Տոլստոյը դեկադենտների հետ բանավիճելիս,— արվեստը պահանջում է ավելի մեծ ճշտություն prècision, քան գիտությունը» (Л. Н. Толстой, О литературе, М., 1955, стр. 592):

Հակադրվելով ռոմանտիզմին, նատուրալիզմին՝ քննադատական ռեալիզմի հետևորդները ներթափանցում էին պատմական ճշմարտության, մարդկային ռեալ հարաբերությունների՝ պատճառ-հետևանքի խորքերը, առաջադրում իրենց սկզբունքները: «Ուսումնասիրիր երևույթը,— գրում էր Ալ. Շիրվանզադեն,— գտիր նրա պատճառները և ընդհանուր օրենքը, ընդհանուր կապը, բոլոր ուժերդ փորձ դիր այդ ընդհանուր օրենքների և կապի կառուցման վրա...» (Երկերի ժողովածու, հ. 10, Ե., 1962, էջ 76): «Ռեալիստ արվեստագետները,— նկատում էր Բերտոլտ Բրեխտը,— ընդգծում են էականը, «երկրայինը», բառիս բուն իմաստով տիպականը (պատմականորեն նշանակալին):

թյան ազատության համար), դեմոկրատիայի համար, այսինքն՝ ժողովրդի ինքնակալության համար, մյուսը— պրոլետարիատի դասակարգային կռիվն է բուրժուազիայի դեմ հանուն հասարակության սոցիալիստական կառուցման» (Երկեր, հ. 9, էջ 391: Ընդգծումները մերն են— Հ. Գ.): Հեղափոխության այդ բարդ բնույթով էլ պայմանավորվում էր գրականության առանձնահատկությունը: Հայ գրականության մեջ օրինակ, բնորոշ էր, մի կողմից Ալ. Շիրվանզադեի, Հ. Թումանյանի, Ավ. Իսահակյանի ստեղծագործությունը՝ համաժողովրդական բնույթով, մյուս կողմից՝ Հ. Հակոբյանի, Շ. Կուրղինյանի պոեզիան՝ պրոլետարական բնույթով: Երկու տարբեր, բայց իրար լրացնող ու ամբողջացնող գրական հոսանք: Մեկը բացահայտում ու խարանում էր ցարական կարգերը, բուրժուական հարաբերությունները՝ խորապես զգալով հեղափոխության ազատարար շունչը, մյուսը աշխատավորությանը պայքարի էր կոչում ցարիզմի դեմ, «հանուն հասարակության սոցիալիստական կառուցման»: Մեկի գեղագիտական իդեալը ազատության հասնելու ազնիվ, բայց վերացական իդեալն էր, մյուսինը՝ սոցիալիստական հասարակության ստեղծման կոնկրետ իդեալը:

Իհարկե, կային և այլ, հեղափոխությունը մերժող տրամադրություններ: Սոցիալական բոլոր չարիքների ոչնչացման, մարդու փրկության միակ միջոցը, ըստ Տոլստոյի համոզմամբ, հեղափոխությունը չէր, այլ «առանձին անհատների ներքին կրոնաբարոյական կատարելագործումը» (Л. Н. Толстой. Полное собрание сочинений, т. 36, М.—Л., 1936, стр. 157):

Հակառակ նման ապակողմնորոշող դատողության, Ռուսաստանը միանգամից կտրեց հարյուրամյակի ճանապարհ. 1905 թվականը, «արևելյան անշարժության» վախճանը դարձավ: Չի եղել այնպիսի դարաշրջան,— գրում էր Լենինը,— երբ այնպես որոշակի և «խելացի» սահմանագծվեին դասակարգերը (տե՛ս հ. 18, էջ 397):

Սահմանագծվեցին ո՛չ միայն դասակարգերը, կուսակցությունները, այլև գրական ուղղությունները: Վճռողը, ուրեմն, պատմա-հասարակական հանգամանքներն էին, հեղափոխական իրականության օրինաչափությունները: Հեղափոխությունն անում է օբյեկտիվորեն (կուսակցությունների և դասակարգերի կամքից անկախ)՝ հասունացող ճգնաժամերից և պատմության բեկումներից,— գրում էր Լենինը: Մյուս կողմից՝ կենսականորեն անհրաժեշտ էր, ընդգծում էր առաջնորդը, ըմբռնել հեղափոխության բնույթը, զարգացման միտումները և օգտագործել դրա շարժիչ ուժերը, բոլոր հնարավորություններն ու սուբյեկտիվ գործոնները, «...ճիշտ ճանաչել պայքարի ուղղությունը և սպառել հաղթանակի բոլոր հնարավորությունները, բոլոր շանսերը» (հ. 11, էջ 428):

Մ. Գորկին իր նոր հերոսներին՝ Վլասովներին ու Նիլովնաներին կերտում էր հենց այդ պատմական հիմքի վրա, նրանց տեսնում պատմության հորձանուտում: Նրանք մարդիկ էին, որոնք, Էնգելսի արտահայտությամբ, «...իրենց վարմունքների շարժառիթներն ստանում են ոչ թե անհատական ճղճիմ բաղձանքներից, այլ այն պատմական հոսանքից, որը տանում էր նրանց» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Արվեստի մասին, հ. 1, Ե., 1963, էջ 30): Ահա ինչու Մայր վեպը, որում «հանում է ոչ թե նիրհող, ինչպես Ֆոմա Գորդեևում, այլ արթնացած ու մարտնչող ժողովրդի կերպարը», նոր սահմանագիծ էր հատկանշում բանվոր դասակարգի և սոցիալիզմի գաղափարախոսությանը նվիրված համաշխարհային գրականության մեջ, թեպետև 1870-ական թվականներից աշխարհով մեկ հնչում էր Ինտերնացիոնալը, թեպետև 1880-ական թվականներից Պլեխանովը ողջ սրությամբ առաջադրում էր բանվոր դասակարգի սեփական արվեստ, պրոլետարական գրականություն ստեղծելու պահանջը: «Սոցիալիստական իդեալը Գորկու մոտ,— նկատում է Բ. Վ. Միխայլովսկին, խոսելով Մայր վեպի մասին,— կորցնում է ուտոպիզմի բոլոր գծերը... Իդեալն սկսում է արդեն մարմնավորվել պատմական կոնկրետ գործողության մեջ, հանում իբրև իրական ուժ...» (История русского романа, т. 2, стр. 572, 587):

Հենց հեղափոխական իրադրությունը հեղափոխական իրականություն դարձնելու, սոցիալիստական իդեալը կենսագործելու պահանջից ելնելով էր



Լենինը գնահատում գրական երկը, բացառիկ խստությամբ վերաբերվում շեղումներին: Այստեղից էլ նրա զգայուն վերաբերմունքը Գորկու հանդեպ, խստությունն ու անսքող ցավը նաև մեծ գրողի՝ հատկապես ռեակցիայի տարիներին դրսևորած սխալների ու թերությունների համար, երբ նա հակվել էր դեպի «ընդհանուր դեմոկրատական տեսակետը, պրոլետարական տեսակետի փոխարեն» (հ. 35, էջ 121):

Հայտնի է, որ Լենինը Լև Տոլստոյին համարում էր «ռուսական հեղափոխության հայելին», նրա ստեղծագործությունը՝ «մի առաջընթաց քայլ ամբողջ մարդկության գեղարվեստական զարգացման մեջ» (հ. 16, էջ 419): Բայց դա վերաբերում էր հետռեֆորմյան և նախահեղափոխական շրջանի՝ 1861—1904 թթ. ստեղծագործությանը, երբ «նրա բերանով խոսում էր ռուս ժողովրդի ա՛յն ամբողջ բազմամիլիոն մասսան, որն արդեն ատում է ժամանակակից կյանքի տերերին...» (հ. 16, էջ 461): Այլ էր, սակայն, խնդիրը ռուսական առաջին հեղափոխության ժամանակաշրջանում, երբ կյանքն առաջին պլան էր մղում նոր տիպի, գործիական-պրոլետարական արվեստը:

«Բացահայտորեն պրոլետարիատի հետ կապված գրականությունը» Լենինը համարում էր սոցիալիզմի գաղափարին ծառայող գրականություն, «երկրի ծաղիկը, նրա ուժը, նրա ապագան» կազմող «միլիոնավոր ու տասնյակ միլիոնավոր աշխատավորներին» ծառայող գրականություն: «Այդ կլինի,— գրում էր նա,— մարդկության հեղափոխական մտքի վերջին խոսքը սոցիալիստական պրոլետարիատի փորձով ու կենդանի աշխատանքով բեղմնավորող ազատ գրականություն...» (հ. 10, էջ 45):

Գրականության դասակարգային էության, ժողովրդայնության, գրականության կուսակցականության մասին իր հայացքները Լենինը շարադրեց Կուսակցական կազմակերպություն և կուսակցական գրականություն հայտնի հոդվածում: Այդ հայացքները նա այնուհետև զարգացրեց ու խորացրեց Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ աշխատության մեջ, Լև Տոլստոյին նվիրված հոդվածաշարում, Փիլիսոփայական տետրերում, ապա՝ Գորկուն ուղղված նամակներում, այլ աշխատություններում ու հոդվածներում, ինչպես նաև պրոլետկուլտականության դեմ ուղղած մի շարք փաստաթղթերում: «Գրական գործը,— ընդհանրացնում էր Լենինը,— պետք է դառնա համապրոլետարական գործի մի մասը», «...սոցիալիստական պրոլետարիատը պետք է առաջադրի կուսակցական գրականության սկզբունքը, զարգացնի այդ սկզբունքը և հնարավորության չափ ավելի լրիվ ու ավելի ամբողջական ձևով կենսագործի այն» (հ. 10, էջ 40): Հեղափոխական կուսակցությունների ղեկավարներին նա հիշեցնում էր, որ անհրաժեշտ է կազմակերպել հեղափոխական տարրերը, որ նրանք պետք է, իբրև փարոս, «...իր ամբողջ վեհությամբ և ամբողջ հմայքով ցույց տան մեր դեմոկրատական և սոցիալիստական իդեալը» (հ. 9, էջ 130):

Գորկին գնում էր այդ ճանապարհով: Եթե Տոլստոյի ռեալիզմի ուժը պատմական ճշմարտության խոր արտացոլումն էր հետռեֆորմյան և նախահեղափոխական ժամանակաշրջանում, ապա «1905 թվականը «արևելյան» անշարժության վախճանի սկիզբն էր... այդ տարին իր հետ բերեց տոլստոյականության պատմական վախճանը» (հ. 17, էջ 42—43), մինչդեռ Գորկու ռեալիզմի ուժը և՛ հեղափոխական իրականության արտացոլման, և՛ սոցիալիստական իդեալի արտահայտման մեջ է, աշխատավորական զանգվածներին սոցիալիստական գաղափարախոսությամբ համակելու, հեղափոխական պայքարի ոգեկոչելու պատմական առաքելության մեջ:

Քննադատական ռեալիզմի կողքին, այսպիսով, կազմավորվում, կազմավորվելով էլ սահմանազատվում էր պրոլետարական գրականության կենսական շիթը:

Եթե քննադատական ռեալիզմի խոշորագույն կրողներն իրենց արվեստի մեծ ուժով բացահայտում էին մասնավոր սեփականության վրա կառուցված հասարակության սուր հակասությունները, ցարիզմի և բուրժուազիայի դեմ սերմանում ցասման ատելություն, սասանում նրանց հիմքերը, ապա պրոլետգրողները կազմակերպում էին այդ տրամադրությունները, տալիս դրանց հե-

ղափոխական պայքարի բնույթ՝ հանուն հասարակության սոցիալիստական կառուցման:

Սոցիալիստական ռեալիզմի նախակարապետները, ամենից առաջ, հաղթահարում էին ռեալիստ արվեստագետների աշխարհայացքային թուլությունները, պրոլետարական արվեստը դարձնում գաղափարական հուսալի զենք՝ աշխարհը վերափոխելու գոտեմարտում:

Սոցիալիստական ռեալիզմի սկզբնավորման ու կազմավորման, քննադատական ռեալիզմի հաղթահարման պրոցեսն անցավ որակական հարստացման երկարատև ճանապարհ: «Սոցիալիստական ռեալիզմը «չվերացրեց» քննադատական ռեալիզմը, չփոփոխեց այն «պայթյունի» պրոցեսում, այլ «վերառավ» դիալեկտիկորեն, նոր պայմաններում շարունակելով այն ողջ առաջավորն ու արժեքավորը, որ մշակվել էր անցյալի արվեստում» (Марксистско-ленинская эстетика, М., 1973, стр. 424):

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵԱԼԻԶՄԻ ԱՄԵՆԱԱԿՆԱՌՈՒ ՏԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ստեղծագործական բոլոր մեթոդներից, ինչպես և քննադատական ռեալիզմից, կոմունիստական իդեալն է, պրոլետարիատի դասակարգային պայքարի իդեալը: Այդ իդեալի առանձնահատկությունն այն է, որ պատմության մեջ առաջինը դա է բացահայտում հասարակական զարգացման օրինաչափությունները: Պատմության մեջ պրոլետարիատն այն դասակարգն է, որի սուբյեկտիվ շահերը համընկնում են հասարակության զարգացման օբյեկտիվ ընթացքին: Նա է իր ձեռքը վերցնում պրոլետարական-սոցիալիստական պայքարի դրոշը, նա է դառնում կազմավորվող սոցիալիստական արվեստի իսկական կրողը և արժանավոր ժառանգորդը մարդկային դարավոր մշակույթի:

Պրոլետարական հեղափոխությունն իրականության մեջ և արվեստում, իբրև գեղեցկի նոր ու վսեմ չափանիշ, առաջինը գիտականորեն գնահատեցին Մարքսն ու Էնգելսը: Նրանք բացահայտեցին այն գաղափարախոսների սնանկությունը, ովքեր պրոլետարիատի պայքարը համարում էին գեղագիտությունից դուրս:

Մարքս-լենինյան աշխարհայացքը, որի պատմական հիմքը պրոլետարական-հեղափոխական պայքարն է, պայքարի նպատակը՝ սոցիալիստական-կոմունիստական իդեալի իրագործումը, դառնում է հասարակական երևույթների մեկնաբանման բանալի, սնում նոր տիպի արվեստը՝ սոցիալիստական ռեալիզմը, լուսավորում արվեստագետի ուղին դեպի բնություն, հասարակական կյանքի բարդ երևույթները, մարդու հոգեկան աշխարհի խորքերը: «Ոչ մի տաղանդ չի կարող փոխարինել բուն կյանքի դիալեկտիկային համապատասխանող գիտական աշխարհայացքին: Այդպիսին է հենց կոմունիզմի դիալեկտիկական-մատերիալիստական աշխարհայացքը: Դրա հիման վրա տաղանդը փթթում է, առնականանում, դառնում խորաթափանց ու հեռատես» («Պրավդա», 1965, № 252):

Բնության, հասարակական կյանքի հարյուր-հազարավոր երևույթներ պատմականորեն ենթարկվում են գեղագիտական մի որոշակի իդեալի՝ սոցիալիստական, կոմունիստական իդեալին: Այդ իդեալը, մագնիսական վիթխարի ուժով, իրեն է ձգում պատկերավորման միջոցներն ու, թեև դանդաղ, բայց լուրջ փոփոխությունների է ենթարկում նաև գեղարվեստական խոսքի կառուցվածքը: Սոցիալիստական ռեալիզմի ստեղծագործական մեթոդը պատմական ճշմարտությունը բացահայտող և, դրանով իսկ պայմանավորված, ամբողջական մի սիստեմ է, և ոչ արտաքին ձև, ինչպես սխալմամբ կարծում են ոմանք: Պատկերավորման բոլոր հնարանքները, անշուշտ, ներառնում է այդ մեթոդը: Դրանք թեև այդ մեթոդի կարևոր, օրգանական մասն են, սակայն, ի վերջո, ենթակա են դրան, այսինքն՝ պայմանավորված են գաղափարական, սոցիալիստական-հեղափոխական բովանդակությամբ: «Մեթոդը,— իրավամբ նկատում էր Հեգելը...,— ոչ թե արտաքին ձև է, այլ բովանդակության հոգին ու հասկացությունը...» (Антология мировой философии, т. 3, М., 1971, стр. 299):

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԻՑ ՀԵՏՈ, երբ կյանքը Ռուսաստանում մտավ իր սոցիալիստական հունը, քննադատական ռեալիզմը, իբրև ստեղծա-



գործական մեթոդ, պատմականորեն փոխեց իր դերը: Սոցիալիստական հեղափոխության շիկացած մթնոլորտում տեղի էր ունենում նշանակալի մի պրոցես ևս, օրգանապես ու կենսականորեն միահյուսվում-միաձուլվում էին հարյուրամյակների և նոր կազմավորվող սոցիալիստական գրականության ավանդները՝ «հինը» և նորը, քննադատական ռեալիզմի հումանիստական և սոցիալիստական ռեալիզմի սոցիալիստական իդեալը, պատկերավորման «հին» և նոր ձևերը: Տեղի էր ունենում ստեղծագործական այլազան մեթոդների համադրման բարդ ու արգասավոր մի պրոցես: Դեմոկրատ գրողները, սոցիալիստական հեղափոխության խոր ներգործությամբ, վերափոխվում էին և՛ հոգեբանությամբ, քաղաքական-գեղարվեստական հայացքներով, և՛ ստեղծագործական թեմատիկ-գաղափարական բովանդակությամբ. նրանք պաշտպանում էին Հոկտեմբերի նվաճումները:

Ստեղծվում էր գեղարվեստական նոր, սոցիալիստական մտածողություն: Դեմոկրատ գրողները նույնպես, նկատում է Դ. Մարկովը, արտահայտում էին «նոր միտումներ, մոտ էին սոցիալիստական արվեստին, իսկ երբեմն էլ միաձուլվում էին նրա հետ...» («Պրավդա», 1973, 25 ապրիլի):

Իր մեջ խտացնելով «բոլոր ժանրերի, գրական դպրոցների լավագույն հատկանիշները» (Ավ. Իսահակյան), սոցիալիստական ռեալիզմը հետզհետե դառնում էր ստեղծագործական համապարփակ մեթոդ: Նորաստեղծ սովետական-սոցիալիստական իրականությունը մերժում էր ամեն տեսակ իզմերը՝ ֆուտուրիզմը, կուբիզմը, նաև զուտ պրոլետարական արվեստ, «իր հատուկ կուլտուրան» (Լենին) ստեղծելու բոգդանովյան սուբյեկտիվիստական-մախիստական հայացքը գեղագիտության մեջ՝ ուղղված գրական ժառանգության դեմ, մի ծայրահեղ մոլորություն, որը Լենինը համարում էր «թեորիապես սխալ և գործնականորեն վնասակար» (հ. 31, էջ 389):

Մերժելով պրոլետկուլտականների վնասակար միտումները՝ Լենինը խոշոր նշանակություն էր տալիս ժառանգության հարցին, այն դիտելով իբրև կոմունիստական հասարակության կառուցման, նոր մշակույթի զարգացման հարուստ զինանոց: «Հարկավոր է վերցնել ամբողջ կուլտուրան, որ կապիտալիզմը թողել է և նրանից սոցիալիզմ կառուցել,— վճռականորեն պնդում էր նա:— Հարկավոր է վերցնել ամբողջ գիտությունը, տեխնիկան, բոլոր գիտելիքները, արվեստը: Առանց այս բանի մենք չենք կարող կոմունիստական հասարակության կյանքը կառուցել» (հ. 29, էջ 66—67):

Դատապարտելով հեղափոխական նվաճումները քամահրողներին, նրանց, ովքեր բազմապիսի ձևերով արգելակում էին բանվոր դասակարգի ազատագրական պայքարը «...իրենց ամենօրյա, առօրյա, անտեսանելի, անորսալի, կազմալուծող գործունեությամբ» (հ. 31, էջ 35), պայքար ծավալելով պրոլետկուլտականների գրական, գրական քննադատության «պղտոր հեղեղի» դեմ, հեղափոխության առաջնորդը 1920 թվականին կոչ էր անում սրբությամբ պահպանել նորի, կոմունիզմի ծիլերը:

Սոցիալիստական ռեալիզմի կազմավորման պատմա-հասարակական հիմքը, արդարև, կոմունիզմի «իրական շարժումն» է: «Կոմունիզմը,— ընդգծում էին Մարքսն ու Էնգելսը Գերմանական իդեոլոգիայում,— մեզ համար վիճակ չէ, որ պետք է սահմանվի, իդեալ չէ, որին պետք է հարմարեցվի իրականությունը: Մենք կոմունիզմ ենք համարում այն իրական շարժումը, որը ոչնչացնում է այժմյան վիճակը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, М., 1955, стр. 34):

Կոմունիզմի «իրական շարժումն» այսօր վիթխարի մասշտաբների է հասել, սոցիալիստական, կոմունիստական գեղագիտական իդեալը ներթափանցել է համաշխարհային գրականության ոլորտը, դարձել առաջավոր գրողների, արվեստագետների նվիրական իդեալը, դարձել տիրապետող ուժ ընդդեմ մոդեռնիզմի, գրական իդեալիստական, ռեակցիոն հոսանքների:

Ստեղծագործական դժվարին ճանապարհով դեպի մարքս-լենինյան գաղափարախոսությունն են գալիս աշխարհի շատ նշանավոր գրողներ: Կյանքը, ի

վերջո, նրանց համոզում է, որ իսկական, պատմական ճշմարտության հասնելու համար միայն բնազդների, ենթագիտակցության վրա հենվելը և կամ ապրելով կյանքից փախուստ տալը անհեթեթություն է: Աշխարհն աբսուրդ է, յուրաքանչյուր պայքար՝ ծիծաղելի,— քարոզում էր Արթուր Ադամովը իր մի շարք պիեսներով, Էժեն Իոնեսկոյի, Սամուել Բեկետի հետ ստեղծելով «Անտիթատրոն»: Սակայն շուտով նա մերժում է «Անտիթատրոնը», հեռանում վաղ շրջանի իր մոդեռնիստական հայացքներից ու գրական մոլորություններից: «Ես այլևս չեմ հավատում այդ խաբուսիկ ավանգարդայնությանը, որը, անկասկած, օգտվում է նոր հնարանքներից, բայց մոռանում է, որ այդ նոր հնարանքները ոչինչ են, եթե հեղինակը չի ծառայում գաղափարախոսության և, իհարկե, ոչ ամեն գաղափարախոսության, իրերն իրենց անուններով եթե կոչենք, օրինակ, մարքսիզմ-լենինիզմին»,— խորին համոզվածությամբ գրում էր նա («Вопросы литературы», 1965, № 6, стр. 150):

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵԱԼԻԶՄԸ Ո՛Չ ՊԱՏՐԱՍՏԻ ՀՐԱՀԱՆԳՆԵՐԻ ժողովածու է, ո՛չ անախրոնիզմ: Սոցիալիստական ռեալիզմը մարդկության գեղարվեստական զարգացման նոր աստիճանն է, պատմականորեն կոչված ու կազմավորված, հարատև զարգացող ու կատարելագործվող գրական նոր որակ:

Այժմ բոլոր խոսակցություններն այն մասին, թե սոցիալիստական ռեալիզմը, իբրև ստեղծագործական մեթոդ, հորինված կամ հնացած է, իբր սպառել է իրեն, զուրկ են իրական ու գիտական հիմքից: Նոր պայմանները, կյանքի առաջընթաց շարժումը, բնականաբար, պատմականորեն ավելի ու ավելի նոր, բարդ խնդիրներ են առաջադրում մարդկությանը, բարոյագիտական, գեղագիտական նոր, տակավին չլուծված խնդիրներ: Սակայն այդ ամենևին չի նշանակում, թե սոցիալիստական ռեալիզմն անզոր է արտահայտելու այդ նորն ու էականը: Մոլորություն է այն կարծիքը, թե սոցիալիստական ռեալիզմի կողքին կարելի է ստեղծել մի այլ մեթոդ ևս, ասենք՝ ռոմանտիզմ: Այդ հարցի սպառիչ պատասխանը տվել է բուլղար փիլիսոփա, գեղագետ-մտածող, ակադեմիկոս Տոդոր Պավլովը իր զրույցներից մեկում: «Ճիշտ այնպես, ինչպես չի կարող սինթեզ լինել մատերիալիզմի և իդեալիզմի միջև մարքսիզմ-լենինիզմի շրջանակներում,— ասում է նա,— չի կարող սինթեզ լինել ռեալիզմի և ռոմանտիզմի միջև՝ սոցիալիստական ռեալիզմի շրջանակներում: Նույնը վերաբերում է նաև սիմվոլիզմին, աբստրակցիոնիզմին, ֆուտուրիզմին, կուբիզմին և այլն: Բոլորովին այլ է հարցը, երբ խոսքը վերաբերում է ոչ թե ռոմանտիզմին, այլ ռոմանտիկային, ոչ թե սիմվոլիզմին, այլ խորհրդանիշներին, ոչ թե էքսպրեսիոնիզմին, այլ արտահայտչականությանը, ոչ թե իմպրեսիոնիզմին, այլ տպավորությանը:

Ճշմարտությունն այն է,— եզրակացնում է ակադեմիկոսը,— որ սոցիալիստական ռեալիզմը ամենանորարարական, ամենադինամիկ, ամենաբարդ ու, միաժամանակ, ամենագործուն ու ամենահեռանկարային արվեստն է» («Иностранная литература», 1970, № 11, стр. 197):



# ՀԱՆՈՒՆ ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ԱՆԱՂԱՐՏՈՒԹՅԱՆ

**(Մորիս Թորեզի ծննդյան 75-ամյակի առթիվ)**



ՖՐԱՆՍԻԱՅԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ստեղծվել է 1920 թ. դեկտեմբերին, երբ համաշխարհային իրադարձությունների զարգացման վրա հսկայական ներգործություն էր ունենում մեծ Հոկտեմբերը: Դա մի շրջան էր, երբ կապիտալիստական աշխարհում առաջադեմ ուժերը մարքսիստների գլխավորությամբ արիաբար պաշտպան կանգնեցին երիտասարդ սովետական հանրապետությանը, իսկ ռեակցիան իր գաղափարական ողջ զինանոցով հարձակվեց նորաստեղծ հանրապետության վրա:

Բուրժուական գաղափարախոսության ազդեցությունը, մանավանդ Ֆրանսիայում, չափազանց մեծ էր: Այդ պատճառով Ֆրանսիայի առաջադեմ հասարակական միտքը պետք է ակտիվ պայքար մղեր երկու ճակատով— մի կողմից մերկացներ սոցիալիզմի հակառակորդներին, իսկ մյուս կողմից՝ լայնորեն պրոպագանդեր սովետական իշխանության հաջողությունները, գրեր ճշմարտությունը նոր հասարակարգի կառուցման մասին, ցույց տար, թե գործնականում ինչպես են իրականացվում սոցիալիստական հասարակական-քաղաքական ու տնտեսական սիստեմը, պետական կառավարման նոր ձևը:

Այդ աշխատանքում ղեկավար դերը պատկանում էր ֆրանսիական կոմունիստական կուսակցությանը, նրա մարտական օրգան «Յումանիտե» թերթին, որին աշխատակցում էին բոցաշունչ հեղափոխականներ Մարսել Կաշենը, Պոլ-Վայան Կուտյուրեն և ուրիշներ:

նրա՝ ցայտուն արտահայտված հակակոմունիստական հայացքներն ու գործողությունները չափազանց բացասաբար անդրադարձան Ժողովրդական ճակատի հետագա բախտի վրա, ճակատ, որի ծրագիրը գիտակցաբար խախտում էր Բլյումի կառավարությունը, մանավանդ «չմիջամտելու» իր քաղաքականությամբ:

Վերլուծելով նախապատերազմյան ժամանակաշրջանի իրադարձությունները, Թորեզը դատապարտում էր Բլյումի դիրքորոշումը, երբ նա հակապատերազմական պայքարի եռուն շրջանում հրաժարվեց մինիստրների խորհրդի նախագահի պաշտոնից: Թորեզը նրան ու սոցիալիստական կուսակցությանն առաջարկեց տեղի չտալ ռեակցիայի ճնշմանը, կազմակերպել մասսաների դիմադրությունը, համատեղ եռանդուն կամպանիա մղել պառլամենտում և նրանից դուրս: Միաժամանակ նա ծաղրում էր «խոշոր բուրժուաների՝ սոցիալիստների դիմակ հագած գործակալների» փոքրոգությունն ու երկչոտությունը և շատ տեղին վկայակոչում Վ. Ի. Լենինի **II ինտերնացիոնալի կրախը** բրոշյուրը, հիմնական ուշադրությունը բևեռելով պատերազմական ժամանակաշրջանի օպորտունիզմի վերաբերյալ լենինյան հետևյալ գնահատականի վրա. 1914—1915 թթ. պատերազմը պատմության այնպիսի մեծ բեկումն է, որ չի **կարող** մնալ օպորտունիզմի նկատմամբ հին վերաբերմունքը: ...Օպորտունիզմը— եթե վերցնելու լինենք համաեվրոպական մասշտաբով— մինչ պատերազմը եղել է, այսպես ասած, պատանեկան հասակում: Պատերազմի ընթացքում այն վերջնականապես առնականացավ, և այլևս չի կարելի նրան կրկին «անմեղ» և պատանի դարձնել (տե՛ս Լենին, Երկեր, հ. 21, էջ 311):

Վճռականորեն հանդես գալով Ժողովրդական ճակատի ծրագիրը սաբոտաժի ենթարկող Ֆրանսիայի կառավարող շրջանների ռեակցիոն քաղաքականության դեմ, Թորեզը միաժամանակ մասսաներին կազմակերպում էր ընդդեմ հիտլերյան Գերմանիայի հետ անգլո-ամերիկյան կառավարող շրջանների համաձայնողական քաղաքականության, ակտիվ պայքար էր մղում ռեակցիայի ուժերի դեմ, որոնք ձգտում էին վիժեցնել փոխօգնության մասին 1935 թ. կնքված ֆրանս-սովետական պայմանագիրը:

1939 թ. սեպտեմբերի 30-ին, Ֆրանսիան երկրորդ համաշխարհային պատերազմի մեջ մտնելու կապակցությամբ, Թորեզը մոբիլիզացվեց բանակ, իսկ հոկտեմբերին, երբ Ֆրանսիայի կառավարությունը անօրինական դեկրետ արձակեց ՖԿԿ-ն արգելելու մասին, անցավ անլեգալ աշխատանքի: ՖԿԿ-ն պատերազմի առաջին իսկ օրերից հանդես եկավ որպես հիտլերյան զավթիչների դեմ համաժողովրդական պայքարի կազմակերպիչ ու ղեկավար: Ֆրանսիայի կառավարողների դավաճանական կապիտուլյացիայից հետո ՖԿԿ-ն 1940 թ. հուլիսի 10-ի մանիֆեստով կոչ էր անում ժողովրդին պայքարի ելնել ընդդեմ զավթիչների և դավաճանների, բանվոր դասակարգի շուրջը ստեղծել Ֆրանսիայի ազատության, անկախության և վերածննդի ճակատ: Եվ որովհետև ֆրանսիական ռեակցիան ու հիտլերյան օկուպանտները սկսեցին հետապնդել Թորեզին, նա, ՖԿԿ-ի Կենտկոմի որոշմամբ, փոխադրվեց ՍՍՀՄ: Այստեղից Թորեզը շարունակում էր ակտիվորեն մասնակցել երկրում ծավալվող Դիմադրության շարժմանը: 1944 թ. նա վերադարձավ հիտլերյան զավթիչներից ազատագրված Ֆրանսիա:

Հետպատերազմյան տարիներին մտնելով երկրի կառավարության մեջ, Թորեզը հանդես է եկել Ֆրանսիայի բանվոր դասակարգի և ողջ աշխատավորության շահերը պաշտպանող բազմաթիվ նախաձեռնություններով: Նա մշակել է պետական ծառայողների համար ընդհանուր կանոնադրություն, որն ընդունվել է պառլամենտի կողմից 1946 թ., ակտիվ պայքարել է էկոնոմիկայի կարևորագույն ճյուղերի ազգայնացման, ռեակցիոն հիմնարկությունների լիկվիդացման, պետական ապարատի դեմոկրատացման համար:

Կուսակցական ու պետական իր բազմակողմանի գործունեության մեջ Թորեզը միշտ էլ ղեկավարվում էր Կոմունիստական ինտերնացիոնալի մշակած հիմնական սկզբունքներով: Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի



զարգացման արդի փուլում նա հանդես եկավ Մաո Ցզե-դունի խմբի սկզբունքային քննադատությամբ, մերկացնելով նրա կեղծ մեղադրանքներն ու հարձակումները ՍՄԿԿ-ի և մյուս կոմունիստական կուսակցությունների դեմ: Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների՝ 1960 թ. նոյեմբերին Մոսկվայում կայացած խորհրդակցությունում Թորեզը հայտարարեց. «Մենք համոզված ենք, որ խոսքը վերաբերում է ոչ թե Չինաստանի կոմունիստական կուսակցության և Սովետական Միության կոմունիստական կուսակցության միջև եղած տարակարծություններին, այլ այն խոր տարաձայնություններին, որ չին ընկերներն ունեն ամբողջ միջազգային կոմունիստական շարժման հետ»:

Թորեզի գլխավոր հոգսերից մեկը միջազգային կոմունիստական շարժման միասնությունն էր: «Իր ամբողջ հեղինակությամբ,— գրում է Վալդեկ Ռոշեն,— նա պաշտպանում էր միասնությունը կոմունիստական ու բանվորական կուսակցությունների խորհրդակցություններում: Նա միասնությունը պաշտպանում էր նաև մեր վերջին համագումարում ունեցած իր ելույթում: Հանդես գալով աղանդավորների դեմ, որոնք փորձում են կազմալուծել ու պառակտել մեր շարժումը, նա պահանջում էր, որ մենք բոլոր հանգամանքներում հաստատուն կերպով հետևենք մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին» (Вальдек Роше, Избр. статьи и речи, М., 1972, стр. 271):

Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Մոսկվայի խորհրդակցությունում (1969 թ., հունիս), մերկացնելով ֆրանսիական բուրժուազիայի աջակցությունը վայելող «ձախ» խմբավորումներին, տրոցկիստներին, ինչպես նաև գիտական կոմունիզմի, եղբայրական կոմունիստական կուսակցությունների և Սովետական Միության դեմ ուղղված մաոիստական կուրսը, Վալդեկ Ռոշեն նշեց, որ ֆրանսիական կոմկուսը շարունակելու է վճռական պայքարը «ձախ» օպորտունիզմի և ավանտյուրիզմի դեմ:

1970 թ. սկիզբը նշանավորեց մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների անաղարտության համար ֆրանսիական կոմունիստների մղած պայքարի մի նոր շրջան: Սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում, կուսակցական մամուլում գաղափարական բարձր մակարդակով տեղի ունեցած դիսկուսիաները դրսևորեցին ֆրանսիական կոմունիստների քաղաքական կոփվածությունն ու տեսական հասունությունը: Դրանց բնորոշ էր սկզբունքային, անզիջում պայքարը Ռոժե Գարոդիի ռևիզիոնիզմի դեմ, որը հանդես էր գալիս ընդդեմ ֆրանսիական կոմկուսի ղեկավարության, խախտում էր դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքները, սուր և ակտիվ կամպանիա մղում Սովետական Միության կոմկուսի և եղբայրական մյուս կուսակցությունների դեմ:

Արդի փուլում ֆրանսիական կոմկուսը, Ժորժ Մարշեի գլխավորությամբ, գաղափարա-քաղաքական վիթխարի աշխատանք է կատարում մոնոպոլիաների դեմ մղվող պայքարում ժողովրդական մասսաների բոլոր խավերին համախմբելու համար: Գործունեության այդ ոլորտում առանձնակի նշանակություն է տրվում երկար տարիների ընթացքում կուսակցության մշակած՝ ձախ ուժերի համատեղ կառավարական ծրագրի հիմնական դրույթները աշխատավորությանը պարզաբանելու հարցին, մի ծրագիր, որի մեջ մտցված են այնպիսի կետեր, ինչպիսիք են բոլոր ձեռնարկությունների ազգայնացումը, հարկային սիստեմի արմատական վերափոխումը և այլն:

Ֆրանսիական կոմկուսը, հետևողական մարքսիստ, միջազգային կոմունիստական շարժման ականավոր գործիչ Մ. Թորեզի ավանդներին հավատարիմ, այսօր էլ շարունակում է մարքսիզմ-լենինիզմի անաղարտության համար անզիջում պայքար մղել «ձախ» օպորտունիզմի, ավանտյուրիզմի և ռևիզիոնիզմի ամեն տեսակ դրսևորումների դեմ:

Ամրապնդելով դեմոկրատական ու առաջադիմական բոլոր ուժերի գործողությունների միասնությունը, Ֆրանսիայի կոմկուսը գլխավորում է դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար մասսաների մղած պայքարը:

**Մ. Ա. ՊԱՆԿՈ**

# ԷՋԵՐ ՀԱՅ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՄՏՔԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

## ՄՇԱԿՈՒՅԹԻ ԵՐԵՎԵԼԻ ԳՈՐԾԻՉԸ

Հ. Լ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Արևմտահայ գրականության և հրապարակախոսության մեջ XIX դարի առաջին կեսին սկսված աշխուժացումը արմատական շարժառիթներ ուներ: Սա գաղափարական զարթոնքի ու հեղաբեկման մի ժամանակաշրջան էր, որի համար հատկանշական էր լուսավորական շարժմանը բնորոշ ձգտումը դեպի գիտության և բանականության հաղթանակը, հավատը դեպի հասարակական առաջընթացը: Դա մի ժամանակաշրջան էր, երբ «Հետըհետէ կը հասնանար Կ. Պոլսոյ մեջ լեզուագէտ ու նորասեր երիտասարդներու խումբ մը, որը հին ոգիեն կտրուած էր թանձր անջրպետով»[1]: Մոտիկից հաղորդակցվելով 40-ական թվականներին Եվրոպայում տեղի ունեցած հեղափոխական-լուսավորական շարժումներին, առաջադեմ մտավորականները, որպես ազգային մշակույթի առաքյալներ, իրենց ձեռքը վերցրին հրապարակախոսության, գրականության, արվեստի և գիտության զարգացման գործը:

Մտավորականների այդ համաստեղության ներկայացուցիչներից էր Նիկողայոս Զորայանը: Իբրև խոշոր մտածող և տնտեսագետ, նա առաջնակարգ տեղ գրավեց XIX դարի առաջին կեսի հայ տնտեսագիտական մտքի պատմության մեջ: Զորայանն առաջինն էր, որ արևմտահայ գրականության մեջ ձեռնամուխ եղավ քաղաքատնտեսության հարցերի բազմակողմանի հետազոտմանը:

Նա կարողացավ ստեղծել տնտեսագիտության հարցերին նվիրված մի շարք գործեր[2], որոնք իրենց բովանդակությամբ և գիտական խոր վերլուծությամբ, անշուշտ, ուշագրավ երևույթ էին արևմտահայ իրականության մեջ: Համառոտակի անդրադառնանք Զորայանի աշխարհայացքի մի քանի կողմերին՝ կապված լուսավորության, հայրենասիրության, հումանիզմի, դաստիարակության և այլ երևույթների ու ըմբռնումների վերաբերյալ նրա մեկնաբանությունների հետ:

Ն. Զորայանի լուսավորական հայացքներն իրենց առավել ամբողջական դրսևորումը գտել են ուսուցման, դաստիարակության, լեզվի, գրականության և մշակույթի հարցերի վերաբերյալ նրա աշխատություններում: Պաշտպանելով եվրոպական լուսավորիչների տեսակետները, նա արծարծում էր այն միտքը, թե մարդիկ բնությունից ծնվում են հավասար և հասարակությունը պետք է

1 Հ. Մրմրյան, Տասնեւիննեըորդ դար և Հովհ. Պրուսացի Տերոյենց, 1908, Կ. Պոլիս, էջ 106:

2 Տես. Ճառ վաճառականութեան և ընկերակցութեան օգտաներուն... Բազմավեպ, 1847 թ., Քաղաքական տնտեսութիւն, Բազմավեպ, 1847—48 թթ., Սկզբունք վաճառականութեան, Մասիս, 1852 թ., Սկզբունք սեղանավորութեան, Մասիս, 1853—54 թթ., Քաղաքական տնտեսութեան վրայ տեղեկութիւններ, Կ. Պոլիս, 1849 թ.:



հոգա ոչ թե առանձին անհատների կամ վերնախավի, այլ բոլորի կրթության մասին, քանի որ «անոնց երկուքին ալ թե բնական և թե մտավորական կարողութիւններն մէկ են, ու ատքի բոլոր տարբերութիւնին միմիայն իրենց դաստիարակութենէն պատճառած է»[1]: Զորայանը գտնում է, որ մարդկանց մտավոր կարողությունների կատարելագործման միջոցը ուսումն ու դաստիարակությունն են և որ դրանք անհրաժեշտ է իրականացնել դպրոցական լայն ցանցի միջոցով:

Կրթության հիմնական օջախ համարելով դպրոցը, Զորայանը զայրույթով ու վրդովմունքով է խոսում կրթական հիմնարկությունների անմխիթար վիճակի մասին. «Ազգին մեջ տեղ-տեղ բնավ դպրոց չի կայ. տեղ-տեղ եղածը անբավական է կամ... երեսին վրայ մնացեր, նայող չունին»[2]:

Ջևական կրթությունը պետք է վերածել «ստույգ» կրթության, բառերի վրա հիմնված ծանոթությունների փոխարեն անհրաժեշտ է «իրական ճշմարտութիւններ» սովորեցնել,— նշում է Զորայանը:

1849 թ. Զորայանը գրում է. Նկարագիր ազգային դաստիարակութեան աշխատությունը: 1852 թ. «Մասիս»-ում հրապարակվում է նրա Ինչու համար դաստիարակութիւնը չի հաջողիր ազգին մեջ... ծավալուն հոդվածաշարը: Նույն թվականին առանձին գրքույկով լույս է տեսնում Ընթերցասիրութիւն... աշխատությունը, 1851 թ. աշակերտության համար գրում է Վարժութիւն ընթերցանութեան ի պէտս դպրոցաց դասագիրքը: Նա մամուլում պարբերաբար հանդես է գալիս հոդվածներով: Այս ամենը հետապնդում է մի նպատակ՝ նպաստել ազգային կրթության և դաստիարակության գործի բարելավմանը:

Նույն այս նպատակով Զորայանը հանդես է գալիս կոնկրետ տեսական և գործնական առաջարկներով: Ազգային դաստիարակության գլխավոր թերություններից մեկը «ուսուցիչ ըլլալիք մարդոց վրայ մասնավոր հոգ մը չի տանել, բավականութիւններին չի քննիլն է»[3]:

Առհասարակ դպրոցներում, նշում է նա «վարժապետ բառը՝ ծեծ կամ տանջանք բառերուն համանշանակն է... դպրոց բառով գրեթե տանջարան կը հասկընան»[4]: Ինչ խոսք կարող է լինել դեպի դպրոցը, ուսուցիչը, կրթությունը տածած սիրո և հարգանքի մասին, երբ ծնողները, կարծես իրենց երեխաներին «մորթվելու համար սպանդարանը տարուած կովերուն պես... միսը քեզի, ոսկորն ինձի ըսելով գազանի պէս մեջերնին կը բաժնեն»[5]: Վախի զգացումի միջոցով չի կարելի երեխաների կամքին տիրել,— նշում է Զորայանը: Անհրաժեշտ է վերացնել բարբարոսական պատիժները, դաժանությունները, կրթության նախնադարյան մեթոդները, որից հետո միայն բարելավված կարելի է տեսնել «ազգային կրթութեան» գործը:

Զորայանը պաշտպանում է ուսուցման պոլիտեխնիկական սկզբունքը, ընդգծում տեսության և պրակտիկայի կապի անհրաժեշտությունը: Ամեն մի արհեստավոր, որ գործնականում կարող է լավ մասնագետ լինել, գրում է նա, այնուամենայնիվ տեսական գիտելիքների կարիք է զգում:

Տեսական գիտելիքների կարևորությունը շեշտելով հանդերձ, Զորայանը պրակտիկ գործունեությունը չի դիտում իբրև երկրորդական, պասսիվ մի պրոցես: Ընդհակառակը, նա մեծ նշանակություն է տալիս նաև պրակտիկային, գտնելով, որ «փորձը մարդկային ազգին ամենամեծ ուսուցիչն է»[6]: Չպետք է կարծել, որ միայն «դպրոցներու մեջ բան կը սորվըվի», անհրաժեշտ է նաև գործնական ուսուցում: Պատահական չէ, որ հենց իր՝ Զորայանի անմիջական նախաձեռնությամբ և ղեկավարությամբ, 1854 թ. Պոլսում հիմնվեց առաջին հողագործական վարժարանը:

1 Ն. Զորայան, Նկարագիր ազգային դաստիարակութեան, Կ. Պոլիս, 1849, էջ 5:

2 Ն. Զորայան, Ինչու համար դաստիարակութիւնը չի հաջողիր ազգին մեջ, Մասիս, 1852, № 4, Կ. Պոլիս:

3 Ն. Զորայան, Նկարագիր ազգային դաստիարակութեան, Կ. Պոլիս, 1849, էջ 11:

4 Նույն տեղը, էջ 17:

5 Նույն տեղը, էջ 18:

6 Բազմավեպ, 1848, էջ 200:

Որպես լուսավորիչ, Զորայանը չէր կարող չանդրադառնալ նոր, ժողովրդին հասկանալի գրական լեզվի հարցին: Կրթության ու լուսավորության ամենից հզոր միջոցներից մեկը, գրում է Զորայանը, «աղեկ ոճով գրված գրքերն են»[1]: «Հասարակ ժողովրդի համար անհրաժեշտ է գրել պարզ, մատչելի լեզվով: Թեև մինչև հիմա բազմաթիվ գրքեր են հրատարակվել, նկատում է Զորայանը, սակայն հասարակ ժողովրդի համար դրանք բոլորն էլ անմատչելի էին, որովհետև դրանց թե՛ նյութը, թե՛ ոճը և թե՛ լեզուն չեն համապատասխանում ժողովրդի պահանջներին: Հետևապես ցանկալի է, որ «հասարակութեան և տղայոց կարդալու գիրքերը իրենց հասկըցված լեզուովը ըլլան»[2]:

Ազգային ինքնաճանաչման և կրթության զարգացման գործում Զորայանը մեծ նշանակություն է տալիս աշխարհաբար լեզվին: Կրթական գործը առաջ կգնա այն դեպքում, երբ «աշխարհաբար լեզուով հարմար դասագիրքեր կը շինենք»[3]: Նա պաշտպանում է աշխարհաբարը, գիտակցելով, որ գրաբարը չի կարող ծառայել ազգին, այն անհասկանալի է ժողովրդական լայն զանգվածների համար. «Գրաբարը հասարակաց լեզու չենք կրնար ընել, այլ փոխարէն մեր աշխարհաբար լեզուն զարգարելու ու տարածելու է»[4]: Զորայանը քննադատում է Մխիթարյաններին, որոնք իրենց աշխատությունները գրում էին «հին դրույթներու վրայ և անհամ ոճով»:

Զորայանին հետաքրքրում ու հուզում է ժողովրդի թշվառ վիճակը և դրանից դուրս գալու ելքը նա տեսնում է կրթության, գիտության, լուսավորության, մի խոսքով՝ մտքի անսահման զարգացման մեջ: Հետևաբար, չպետք է կաշկանդել, կապանքների մեջ դնել մարդու ստեղծագործական միտքը, քանի որ «միտքը բանտ չի ճանչնար»: Հասարակությունը պարտավոր է ապահովել բոլոր մարդկանց դաստիարակությունը, զարգացնել նրանց հոգևոր ուժերը և անհատական ընդունակությունները: Գիտակցությունն է, ըստ Զորայանի, որ կազմակերպում և առաջ է մղում պատմությունը:

Բանականության դերի այս իդեալականացումը նույնպես ֆրանսիական լուսավորիչների ազդեցության հետևանք է: Զորայանը նկատում է, սակայն, որ միտքը չպետք է կտրել, առանձնացնել նյութական աշխարհից, քանի որ «բոլորովին իմացականապես ապրիլն հրեշտակներուն է օժտված»[5]: Միտքը մարմնական զգայությունների միջոցով նյութական աշխարհի հետ սերտորեն կապված է,— գրում է Զորայանը:

Լուսավորիչները, այդ թվում և Զորայանը իրենց ամենակարևոր խնդիրը համարում էին մարդուն ֆեոդալական ստրկությունից ազատելը: Պատմական զարգացման առանձնահատկությունների հետևանքով տարբեր ազգերի մոտ այս խնդիրը տարբեր կերպ է լուծվել: Բայց, չնայած դրան, բոլոր ժողովուրդների առաջավոր ներկայացուցիչները ֆեոդալիզմի դեմ իրենց մղած պայքարի շրջանում, մարդու ազատության հարցին առաջնակարգ տեղ են հատկացրել:

Որպես հումանիստ, Զորայանը որոշակիորեն սահմանազատվում է այն գործիչներից, որոնք ազգ կամ ժողովուրդ ասելով նկատի ունեին առավելապես հարուստներին, չէին հետաքրքրվում աշխատավոր ժողովրդի վիճակով: Ընդհակառակը, Զորայանի նպատակը հասարակության մեծագույն մասի՝ «այսինքն խիստ ռամիկի մասին խոսելն է»[6], քանի որ «խիստ քիչ անձինք արժան համարել են ռամիկի հետ խոսելու»[7]:

Զորայանը, որպես լիբերալ բուրժուազիայի գաղափարախոս, հասկանում էր աստիճանաբար ամրապնդվող բուրժուական արտադրահարաբերություննե-

1 «Մասիս», 1852, № 30:

2 Ն. Զորայան, Նկարագիր ազգ. դաստիարակութեան. Կ. Պոլիս, 1849, էջ 339:

3 Ն. Զորայան, Քաղ. տետ. վրայ տեղեկ., Կ. Պոլիս, 1849, էջ 340:

4 Ն. Զորայան, Նկարագիր ազգ. դաստիարակութեան, Կ. Պոլիս, 1849, էջ 258:

5 Ն. Զորայան, Սկզբունք փաճառականութեան. Մասիս, 1852, № 19:

6 Ն. Զորայան, Ընթերցասիրութիւն... էջ 12:

7 Ն. Զորայան, Քաղաք. տետ. վրայ տեղեկ., էջ 1:



րի առաջադիմական նշանակությունը: Թուրքահայ իրականության մեջ նա առաջիններից էր, որ ակտիվ պայքար մղեց ֆեոդալական կարգերի և նրա պաշտոնական գաղափարախոսության դեմ: Զորայանը քննադատեց «սուրբ հայրերին», որոնց անմիջական նպատակը «երկրին վրայ» ուղղակի և անուղղակի ճանապարհներով, «ռամիկ, ստորադաս» ժողովրդի հարստահարումն ու թալանումն է, նրանց մտքերի թունավորումը:

Քննադատելով կրոնը, Զորայանը, այնուամենայնիվ, չհանգեց նրա բացասմանն ու ժխտմանը և հիմնականում մնաց իդեալիստական մտածողության շրջանակներում: Նա չկարողացավ և ի վիճակի չէր բացահայտել կրոնի սոցիալ-դասակարգային արմատները:

Ի տարբերություն նոր զարգացող արևմտահայ բուրժուազիայի գաղափարախոսների, որոնք, թմբկահարելով հայրենիքի, ազգի, ժողովրդի մասին լոզունգները, դրանց հետևում թաքցնում էին իրենց պայքարի դասակարգային էությունը, Զորայանը սիրում է իր տառապած ժողովրդին, որը հարստահարվել է բռնակալների ու կեղեքիչների կողմից:

Լինելով կրքոտ հայրենասեր, նա մեծ վրդովմունքով է խոսում այն մտավորականների՝ պատմաբանների, գիտնականների, ճանապարհորդների մասին, որոնք աղավաղում են հայոց պատմությունն ու իրականությունը և կամայականորեն են մեկնաբանում պատմական իրադարձությունները:

1854 թ. ապրիլի 27-ին «Մասիս» շաբաթաթերթում հրապարակվում է Ն. Զորայանի՝ Է. Տիվլոռեին[1] հղած նամակը, որտեղ Զորայանը երախտագիտության մեծ զգացումով նշում է, թե որքան ճշմարտացի և մարդասիրությամբ է գրված Տիվլոռեի հոդվածը Հայաստանի մասին՝ ի տարբերություն «ձախորդ, վատ, կեղծավոր ու շահախնդիր մարդոց»: Զորայանը շատ բարձր է գնահատում նաև Բայրոնին՝ հայերի և Հայաստանի մասին նրա հոդվածաշարի համար: Զորայանը ատելությամբ է լցվում նրանց հանդեպ, որոնց «հրատարակածները անվայել տմարդությամբ լեցուն... հորինվածներ են»: Նա առանձնապես կշտամբանքի խոսքեր է ուղղում այն հեղինակներին, որոնք ձգտում են գրել հայ ազգի մասին՝ առանց մոտիկից ծանոթանալու և շփվելու նրա կենցաղին ու բարքերին, գոյության իրավիճակին: Այս տեսակետից նա խիստ քննադատության է ենթարկում Էլլիոդի Ճանապարհորդություն Ավստրիա, Ռուսաստան և Տաճկաստան գիրքը, որի ընթերցումից պարզվում է, գրում է Զորայանը, որ հեղինակը մտովին է կատարել այդ ճանապարհորդությունը, իսկ իրականում նա գրել է իր առանձնասենյակում՝ զոռ տալով երևակայությանը[2]:

Զորայանն աշխատեց լուսավորությունը ծառայեցնել հայրենիքի վերածննդի, ժողովրդին միջնադարյան խավարից դուրս բերելու գործին: Խոսելով XVIII դարի լուսավորիչների մասին, Վ. Ի. Լենինը գրում է. «...Նրանք լիովին անկեղծորեն հավատում էին ընդհանուր բարօրության և անկեղծորեն ցանկանում էին այն, անկեղծորեն չէին տեսնում (մասամբ դեռ չէին կարող տեսնել) հակասություններ այն կարգի մեջ, որ ճորտատիրականից էր աճում»[3]:

Զորայանը հասկանում է, որ հասարակարգը միատարր չէ, նրանում կան հարուստներ և աղքատներ, «աղաներ և նոքարներ», ճորտեր և ճորտատերեր, իրենց քրտինքով ապրող մարդիկ և ավազակներ: Բայց նա չի նշում, թե ինչպես, սոցիալական ինչ հողի վրա են առաջացել այդ տարբերությունները, այլ խոսում է միայն դրանց՝ որպես գոյություն ունեցող փաստի մասին:

Հասկանալի է, որ Թուրքիայում բուրժուական արտադրահարաբերությունների այնքան դանդաղ զարգացման պայմաններում խոսք անգամ չէր կարող լինել քիչ թե շատ զարգացած ու կազմակերպված պրոլետարիատի և նրան շահագործող կապիտալիստական դասակարգի մասին: Այդ պայմաններում Զորայանը, բնականաբար, չէր կարող ըմբռնել դասակարգերի՝ որպես ավարտուն-

1 Անգլիացի հայագետ, որը Փարիզի թերթերից մեկում հանդես է եկել հայերի մասին ծավալուն հոդվածով:

2 Մասիս, 1854, ապրիլի 24:

3 Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 2, էջ 646:

հասկացության, էությունը և ձգտում է վերանալ սոցիալ-դասակարգային հարաբերություններից ու խոսում է ազգի մասին առհասարակ։ Ինչպես տեսնում ենք, Զորայանը հասարակության հակամարտ դասակարգերը հստակորեն չի առանձնացնում։ Դասակարգերի և դասակարգային պայքարի մասին որոշակի հասկացությունը նրա մոտ բացակայում է։

Սակայն, ինչպես վերը նշեցինք, Զորայանը նկատել է, որ հասարակության միատարր չէ։ Հարուստ և չքավոր դասակարգերի գոյությունը համարելով բնական երևույթ, լուսավորիչներն առհասարակ ջանում էին մշակել մարդկանց նոր բարոյական նորմեր և սկզբունքներ։ Զորայանի համար այդպիսի նորմերից են կրթությունը և դաստիարակությունը։ Նա հավատում էր, որ գիտության ու լուսավորության միջոցով կարելի է հասնել կյանքի նյութական բարեկեցության բարձրացմանը՝ առանց տիրապետող տնտեսակարգի արմատական հեղաշրջման։ Սա իդեալիստական գաղափարախոսություն է, որն ընդհանրապես հատուկ էր լուսավորիչներին։

Անհրաժեշտ է նշել, որ Զորայանը ազգային ինքնագիտակցության քարոզիչ է և հետևողականորեն հանդես է գալիս լուսավորությունը ժողովրդի ազգային ինքնագիտակցության զարթոնքին ծառայեցնելու օգտին։

Զորայանը հավատացած էր, որ ինքն արտահայտում է ժողովրդի շահերը, որ կրթության, դաստիարակության ու լուսավորության մասին իր քարոզած գաղափարները կոչնչացնեն ամեն տեսակի բռնություն և ընդհանուր բարեկեցություն կբերեն ամբողջ ազգին։ «Հավատացեր եմ,— գրում է նա,— որ եթ այս առաջարկութիւնները ի գործ դրուին շատ չքաշեր՝ ազգերնուս մէջ շատ մեծ փոփոխութիւններ կըլլան»[1]։

Անցյալում առաջավոր մտածողներից քչերն են ժամանակին գնահատվել։ Դա, առավել ևս, բնորոշ է թուրքական բռնապետության պայմաններում ստեղծագործող հայ մտավորականների համար։ Այդպիսի բախտի է արժանացել նաև Ն. Զորայանը։

Զորայանի մահից[2] հետո արևմտահայ մամուլում ընդամենը մի քանի կցցկտուր հոդվածներ և տեղեկություններ են տպագրվում նրա մասին, որոնք, ինչ խոսք, ամբողջական և լրիվ պատկերացում չեն կարող տալ երևելի մտավորականի մասին։

Մեր օրերում մի շարք հետազոտողներ այս կամ այն հարցի քննարկման կապակցությամբ անդրադարձել են Զորայանի լուսավորական, մանկավարժական, տնտեսագիտական հայացքներին։ Սակայն, մեր կարծիքով, նրա թողած հարուստ ժառանգությունն ավելի լուրջ ուսումնասիրության կարիք ունի։ Խոսքն ամենից առաջ Զորայանի տնտեսագիտական հայացքների մասին է, որոնց բազմակողմանի վերլուծությունը ավելի կհարստացնի հայ տնտեսագիտական մտքի պատմության անցյալի էջերը։

[1] «Բազմավեպ», 1847, էջ 380։
[2] Նա մահացավ 1859 թ.։

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՅԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ)։

Адрес редакции: 375033, Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64։

ՎՖ 03766 Պատվեր 1406 Թղթի չափսը 70×108[1]/16։ Տիրաժ՝ 14.200 Գինը՝ 20 կ.։

Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 13/VI 1975

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երև. Իսահակյան փող. № 28։



# ՁԵԶ ՀԱՄԱՐ, ԸՆԹԵՐՑՈՂՆԵ՛Ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Երկերի լիակատար ժողովածու. Հ. 2, «Հայաստան» հրատ., 1975։

Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ—Երկերի ժողովածու. М., «Политиздат», 1975։

Սովետական Միության արտաքին քաղաքականությունը. М., «Политиздат», 1975։

Բոլշևիկյան կուսակցությունը 1905—1907 թթ. հեղափոխության մեջ. М., «Политиздат», 1975։

Մ. ՄԵՐԺԱՆՈՎ—Դա եղել է այսպես. М., «Политиздат», 1975։

ՅՈՒ. Վ. ՈԺԵԳՈՎ—Սոցիալական կանխատեսությունները և գաղափարական պայքարը. М., «Политиздат», 1975։

Չեխոսլովակիայի մարքսիստական գրական քննադատությունը 20—30-ական թվականներին։ Հոդվածների ժողովածու։ Թարգմ.՝ չեխերենից ու սլովակերենից. М., «Прогресс» հրատ., 1975։

Դ. Դ. ԼԵԼՅՈՒՇԵՆԿՈ—Մոսկվա—Ստալինգրադ—Բեռլին—Պրագա։ Բանակի հրամանատարի գրառումները. М., «Наука» հրատ., 1975։

Վ. Ի. ՉՈՒՅԿՈՎ—Դարի կռիվը։ Հուշեր Ստալինգրադի պաշտպանության մասին. М., «Советская Россия» հրատ., 1975։

Վ. Պ. ԿՈՐՉԱԳԻՆ—Աշխատանքային ռեսուրսները գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում. М., «Экономика» հրատ., 1975։

Լ. Ա. ԲԵՅԼԻՆ—Սոցիալիստական մրցության տնտեսական հիմունքները. М., «Экономика» հրատ., 1975։

Բ. Ա. ՌԱՅԶԲԵՐԳ, Լ. Ս. ՊԵԿԱՐՍԿԻ—Ժողովրդատնտեսական պլանավորման գիտական հիմունքները. М., «Экономика» հրատ., 1975։

Լ. Դ. ՅՈՒՊԿՈ—Արտադրության արդյունավետության բարձրացումը. М., «Экономика» հրատ., 1975։

Զ. Ս. ԲՈԳԱՏԻՐԵՆԿՈ—ԱԳԿ-ն և աշխատանքի արտադրողականությունը. М., «Экономика» հրատ., 1975։

Գիտատեխնիկական առաջընթացի տնտեսական խնդիրները գյուղատնտեսության մեջ. М., «Экономика» հրատ., 1975։

Վ. Ի. ԱՐԴԱՄԱՏՍԿԻ—Քաջերի խենթությունը. «Հայաստան» հրատ., 1975։

Կ. ՍԻՄՈՆՈՎ—Զինվոր չեն ծնվում. «Հայաստան» հրատ., 1975։

*Վեպը նվիրված է Հայրենական մեծ պատերազմին և հեղինակի Ողջեր և մեռածներ վեպի շարունակությունն է։*

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՀԱՐԴԱՐՄԱՆ ՆՈՐ ՆՅՈՒԹ

*Շինանյութերի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտում մշակվել է թղթաձյութային ծածկույթով երեսպատված փայտաթելային սալիկների ստացման եղանակ։ Այդ սալիկներն օգտագործվում են հասարակական շենքերում՝ պատերի, սանիտարա-տեխնիկական խցիկների, պանելների և միջնապատերի ներքին երեսպատման համար։ Տարբեր գույներով և պատկերներով ներկված ամուր սալիկները կիրառվում են կահույքի պատրաստման, առևտրական շենքերի, վագոնների, ավտոբուսների հարդարման համար։*

## ՌԵՏԻՆԱԳՈՐԳԵՐ՝ ԿՈՎԱՆՈՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*Մաշված ավտոդողերի կտորտանքից, ռետինե արդյունաբերության թափոններից, սինթետիկ կաուչուկի, լցոնների և վազելինային յուղի ավելացմամբ, պատրաստվել են ռետինե ներքնակներ՝ հատկապես կովանոցների համար։ Դրանք, առանց սոսնձման, փռվում են ուղած հիմքի (աղյուսի, փայտի, բետոնի) վրա և կարերը փակում ցեմենտե շաղախով։ Այդպիսի հատակը հատուկ խնամքի և նորոգման կարիք չունի, և միաժամանակ, որ ավելի կարևոր է, անհրաժեշտություն չկա վրան որևէ բան փռելու։ Նման հատակի մեկ քմ 5—6 ռուբլի է, ծառայում է 10 տարուց ոչ պակաս։*

## «ՍՈՒԳՐԱՆԸ»՝ ԱՆԱՍՆԱԿԵՐ

*Բելոստոկի (Լեհաստան) բարձրագույն ինժեներական դպրոցի մասնագետները որոշակի համամասնությամբ չորացված կանաչ մասսայի, կերային խմորասնկերի, կավճի, աղի, միզանյութի և կաթնաշիճուկի խառնուրդից (կանաչ մասսայի սովորական չորանոցներում) պատրաստել են հիանալի անասնակեր՝ «Սուգրան»։ Անասունների կերաբաժնում «Սուգրանը» փոխարինում է արդյունաբերական խտացված կերին։*

## ՈՒԼՏՐԱՁԱՅՆԱՅԻՆ ԼՎԱՑՈՒՄ

*Վիրահատության նախապատրաստվելիս բժիշկը գործիքների և ձեռքերի ախտահանման վրա ավելի շատ ժամանակ է կորցնում, քան բուն վիրահատության։*

*Ճապոնական «Տատէբէ սեյյուգո» ֆիրման ստեղծել է ավտոմատ, որի շնորհիվ այդ պրոցեսը տևում է ընդամենը 30 վայրկյան։ Ապարատի աշխատանքը՝ հիմնված ուլտրաձայնային կավիտացիայի սկզբունքի վրա, նպաստում է ախտահանող լուծույթի թափանցմանը ամենադժվարամատչ տեղերը։ Ապարատը հասարակ է, անվնաս՝ սպասարկող անձնակազմի և վիրաբույժների համար. այն նաև անտեսապես շահավետ է ախտահանման մինչ այդ եղած եղանակների համեմատ։*

## ԳԱՂՏՆԱՆՇԱՆՈՎ ՓԱԿԱՆ

*ԱՄՆ-ում թողարկված առանձնապես հուսալի էլեկտրոնային փականն ըստ էության, մինիատյուր էլեկտրոնահաշվիչ մեքենա է։ Փականը «հիշում է» թվային գաղտնանշանը, որը նույն կերպ տեղադրված է սիգարետանման ձողաձև բանալու մեջ։ Բանալին մտցնելիս, փականը տալիս է իմպուլսների շարք, որոնք ստիպում են բանալուն՝ իր թվային կոդը հաղորդելու փականին։ Եթե բանալու և փականի կոդերը համընկնում են, դուռը բացվում է, հակառակ դեպքում՝ միանում է տագնապի ազդանշանը։ Բանալու ինֆորմացիան չի կարող անհետանալ կամ փոխվել էլեկտրամագնիսական կամ էլեկտրաստատիկ դաշտով, չի կարելի կարդալ նաև բանալու կամ փականի կոդը։*